ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՄԹ.

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ

## ՀԱՏՈՐ Գ.

ԳՐԵՑ

Հ. ԵՓՐԵՄ Վ. ՊՕՂՈՍԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԷՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1969



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ

## ՀԱՏՈՐ Գ.

ԳՐԵՑ

Հ. ԵՓՐԵՄ Վ. ՊՕՂՈՍԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1969

## ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

«Պատմութիւն Հայ Մշակութային Ընկերութիւններու» այս Գ. Հատորը լոյս կը տեսնէ մեր բացակայութեան շրջանին, երբ Լիբանանի հեռաւոր մէկ անկիւնին մէջ — Բէյրութ — հայ մանուկներու դաստիարակութեան եւ ուսման նուիրուած կեանք մը կ՚անցնէինք։

Գրքոյկս ո՛չ ամբողջական, ո՛չ որոշ շրջանի բովանդակութեամբ եւ ոչ ալ վերջացած Հատորիկ մըն է՝ անկախ մեր կամքէն եւ կանխորոշ նպատակէն։ Մենք կը փափաքէինք այս Հատորին մէջ ամփոփել Անատոլուի եւ Պոլսամերձ Հայկական շրջաններու Մշակութային Ընկերութիւններու Պատմութիւնը ամբողջապէս։ Յոյս ունինք սակայն որ մօտաւոր ապագային մեզ կը յաջողուի լրացում եւ ամբողջացում մը գլուխ բերելու այս թերի Հատորին։

Անհրաժեշտ կը համարինք Հատորիս վերջաւորութեան տալու ցանկ մը նիւթերու եւ ցանկ մը տեղանուններու։

Բէյրութ

ՀԵՂԻՆԱԿԸ

# GESCHICHTE DER ARMENISCHEN KULTUR-VEREINE

## III. BAND

VON

P. EPHREM POGHOSSIAN

MECHITHARIST





WIEN

MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI

1969

# ԱԿՆ

## 1. Ս. ՆԵՐՍԻՍԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1848)

Ակնի *հնագոյն Ընկերութիւնն է ասիկա:* *Պոլսոյ* Հայաստան (1848, *Թ.* 128) 1848 *Դեկտ.* 4 *թուականով կը հաղորդէ.* «*Ուրախութիւն լուր մը* Ակնէն *առնելով Վեհ. Սրբազ. Պատրիարքը մեզի կը հաղորդէ.* Սոյն քաղաքն 120 հոգիի չափ *ուսումնասէր անձինք* Ընկերութիւն *մը ընելով* բարեկարգ դպրոց մը հաստատեր են... *եւ դպրոցին ներքին կառավարութիւնն ալ արդոյ* Տէր Մկրտիչ... *քահանային յանձներ են...*»:

*Հայ թերթը յետոյ ամբողջացնելով իր տուած լուրը՝ կը գրէ՝* «...*ծանուցինք Ակն քաղաքի հայազգի աշխատասէր բնակչաց ազգասիրական ջանիւքը* Սրբոյն Ներսիսի Ընկերութեան *մը հաստատութիւնը, որուն նպատակն էր* նոյն քաղաքին մէջ բարեկարգ դպրոց մը կանգնել... *քիչ ժամանակի մէջ դպրոցը փառաւոր շէնքով շինուած եւ անցեալ տարուան Սեպտեմբերի* 1*ին աշակերտաց դասատուութիւն ալ սկսեր է...*» (Հայաստան, 1849, *Թ.* 144, *Մարտ* 26):

***Յաջորդ տարիներուն չի յիշուիր այլեւս:***

## 2. ԱԶԳԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

Հիմնուած է 1862 Մայիս մէկին: 1863 Յունիս 10ին Ակնէն կը հաղորդեն Պոլսոյ Մասիսին. «...պարտ անձին կը համարինք համառօտիւ ծանուցանել ձեզ իբրեւ Ազգային տեղեկութիւն Ակնայ Նորահաստատ Ազգասիրական Ընկերութեան կազմութիւնը ..Այս Ընկերութիւնը 1862 Մայիս մէկէն ծագում առնելով, նպատակ դրած է իրեն... քաղաքիս մէջ դպրոցական արդի վիճակը բարելաւցնել, բարեպաշտական գործոց ըստ կարի ձեռնտու ըլլալ, ուսման ու գիտութեան յարգը ճանչցնել ու ծաւալել... կը յուսայ Ընկերութիւնը որ բաժանորդագրութեամբ հանդանակելով շահեցուցած ստակը՝ որոշեալ ամբողջ գումարի մը հասցնելով՝ գիշերօթիկ դպրոց մըն ալ կանգնելու...» (Մասիս, Կ. Պ. 1863, Թ. 595):

Ինչպէս կը տեսնուի՝ աւելի քան տարի մը վերջ է որ Ընկերութիւնը իր գոյութիւնը կը ծանուցանէ եւ սակայն «նորահաստատ» կը համարի զայն:

Հնութեան մէջ Պոլսոյ Վարագայ Հավատիս (1865, Թ. 192) եւ Օրագիր (1871, Թիւ 445) յիշատակած են Ընկերութիւնս: 1878ին տակաւին իր գոյութիւնը կը պահէր, թէեւ ոչ աշխոյժ գործունէութեամբ. կը յիշէ զայն Գարեգին Ծ. Վ. Սրուանձտեանց (Թորոս Աղբար, Ա., էջ 252): Իսկ 1895ին կը գրէ Յովսէփ Ճանիկեան. «Նպատակն է երբ գրա—

*մագլուխն* 1000 *հատ օսմ. լիրայի հանի՝* վարժարան մի բանալ. *նաեւ միմեանց օգ-նել*: 1864—65*ին վարժարան մի բացած են, բայց* 1—2 *տարի յետոյ գոցուած է*: 1873*ին եւս* «Լուսաւորչեան» *անուամբ վարժարան մի բացին, բայց դրամագլուխն եւ եկամուտն որոշեալ գումարին հասած չլինելով՝* 1—2 *տարի յետոյ գոցեցին: Ունի իւր ժողովներն ու* Կանոնագիրն, *որ վաւերացեալ է*…» (Յովսէփ Ճանիկեան, *Հնութիւնք Ակնայ*, *Թիֆլիս* 1895, *էջ* 41):

Տօքթ. Տաղաւարեան (Արեւելք, *Կ. Պ.* 1898, *Թ.* 3854) *չէ կրցած տալ Ընկերու-թեանս* անունը: *Միակ է*, *հետեւաբար*, Մա-սիսի (1881, *Թ.* 2889) *յօդուածագրին քով Ընկերութեանս հիմնումի տարին* — 1867 — *որուն կը հետեւի նաեւ* Ա. Ալպօյաճեան (*Տէ՛ս* Աստղաբերդ, *Կ. Պ.* 1951, *Թ.* 5—6, *էջ* 117):

*Ընկերութեանս կարեւոր անդամներ եղած են*. Յովսէփ Ճանիկեան, Գրիգոր Տէր-Գրիգորեան, Մարտիրոս Պարսամեան, Գրի-գոր Միննեքնեան, Գէորգ Գույումճեան եւ Յակոբ Թորոսեան (Աստղաբերդ, *անդ՝ էջ* 119):

### 3. …ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

*Ակնցիները* Պոլսոյ *մէջ* 1864*ի ամբան Ընկերութիւն մը հիմնած են*, *որուն* անունը *չի տար օրուան հայ թերթը*: Մասիս (1864,

Թ. 661) 1864 *Հոկտ. 10 Թուականով կը գրէ իր* «Խառն լուրերու» *մէջ. «Կը լսենք թէ* մայրաքաղաքս գտնուող *քանի մը* Ակնեցի հայազգի Ակնայ մէջ ամերիկայի կտաւ շինելու գործարան մը հաստատելու *համար* Ընկերութիւն մը կազմեր *եւ Բ. Դրան աղերսագիր մատուցեր են որ այս հաստատութեան համար պէտք եղած հրամանն ու արտօնութիւնները շնորհէ իրենց: Մխանդամայն ազգ. Բաղաքական ժողովոյ ալ աղերսագիր մը տալով կը խնդրեն եղեր որ իրենց խնդրանաց կատարմանը համար միջնորդութիւն ընեն Բ. Դրան առջեւ. կը խոստանան եղեր* տարուէ տարի Ակնայ աղջկանց վարժարանին տասն հազար դուրուշ նպաստ նուիրել՝ *քանի որ Ընկերութիւնը կանգուն կենայ*»:

*Ուրիշ տեղ լուսաբանութիւն մը գտած չենք:*

4. ԱՆՁՆՈՒԷ՞Ր ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864—65?)

1874 *Ապրիլին կը գրէ Պոլսոյ* Ասիա *թերթը՝ պատմելով* հին, անցած *դէպք մը.* «*Ակնայ քաղաքին դատաստու* Կ. Պոլսեցի խոսրով էֆ. Մուրատեան ...երկու տարւոյ չափ Ակնայ մէջ դատաստութիւն բրած *ժամանակ* իր կազմած ազգօգուտ մէկ Ընկերութեանը *համար հալածական ըլլալով՝ Կ. Պոլիս վերադարձած էր...*» (Ասիա, Կ. Պ. 1874, *Թ.* 22, *Ապրիլ* 6):

*Ո՛չ Ընկերութեան* անունը *եւ ոչ հիմ-
նումի* թուականը *յայտնի է* :

5. ՆԱՀԱՊԵՏԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865)

*Կազմուած է* 1865*ին* : *Հիմնադիրն է* Միսաք Թիմուրեան, *որ Ընկերութեան* նպատակին *վրայ տետրակ մը հրատարակած է*, *ուր կ'ըսէ*. «Նահապետական *անուն* Ընկերութիւն *մը կազմեցինք*, որպէս զի անով կարենանք երկրագործական արդար վաստակոյ համար աշխատիլ եւ միջոց ձեռք բերել» (Գ. Ծ. Վ. Սրուանձտեանց, *Թորոս Աղբար*, *Ա.*, *էջ* 260 *եւ* 262) :

*Ընկերութեան հիմնումէն քանի մը տարի վերջ*՝ Մշոյ դաշտին մէջ գիւղ մը կը գնեն Սրուանձտեանց վարդապետին միջոցաւ *ու գիւղին անունը կը դնեն* Նոր Հայ գիւղ (*Տե՛ս մանրամասնութիւնք*՝ Թորոս Աղբար, *անդ*՝ *էջ* 260—68 *եւ* Ակն եւ Ակնցիք, *Փարիզ* 1952, *էջ* 791) :

*Ընկերութիւնս յիշուած է* Մանզումէի Էփքեարի *կողմէ* (*Կ. Պոլիս*, 1869, *Թ.* 918) :

6. ԹԱՆԳԱՐԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865—68)

*Կը յիշուի* 1869 *Մայիսին*՝ *սա անորոշ ձեւով*. «*Ակնայ ազգային դպրոցները խիստ խեղճ վիճակի մէջ են*, *բայց* Թանգարան *անուն* Ընկերութեան մը անկախ եւ փոքրիկ *վարժարանը կայ*, *գովութեան արժանի է*, *ուր քառասուն եւ հինգ տղայի չափ ուսմունք*

եւ լեզուագիտութիւն կը սորվին (Մանզումէի էֆքեար, Կ. Պ. 1869, Թ. 954):

Յիշատակութեան այս անորոշութիւնը եւ նաեւ Ընկերութեան 1869ին արդէն սեպհական դպրոց մ'ունենալու պարագան թոյլ կու տան խորհելու թէ Ընկերութիւնը 1869ին նոր չէր կրնար ըլլալ: Հետեւաբար, ըստ մեզ, կարելի է 1865—68 տարիները հիմ առնել Ընկերութեան հիմնումի թուականին:

## 7. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

Հիմնուած է 1872 Յուլիս 1ին: Հիմնադիրներէն մին եւ Ատենապետը՝ Զարեհ Կ. Թորոսեան 1874ին Այնէն կը տեղեկագրէ. «Թուէս երկու տարուոյ չափ յառաջ քաղաքիս մի քանի դաստատուաց եւ երիտասարդաց հետ Ուսումնասիրական անուամբ Ընկերութիւն մը կազմեցաք Թանգարանով (Գրադարան) Ընթերցարան մը հաստատելու համար, ընթերցանութիւնը եւ դաստիարակութիւնը տարածելու եւ մտքերն լուսաւորելու եւ զարգացնելու նպատակաւ» (Լոյս, Կ. Պ. 1874, էջ 204):

Ընկերութիւնը ունեցած է իր Կանոնագիրը, մեզի անծանօթ. շաբաթական անդամավճարն է 20 փարա: 1874ին 30 անդամ ունեցած է: Հիմնադրութեան առաջին տարին Ծաղիկ անունով ձեռագիր (խմորատի՞պ) Շաբաթաթերթ մը հրատարակած է Ընկերութիւնը՝ նիւթական-բարոյական շահ

մը ապահովելով, սակայն երկրորդ տարւոյն սկիզբը Ազգ. Վարչութիւնը դադրեցնել տուեր է թերթը: Բ. տարին Ընկերութիւնը ներկայացուցած է «Վահան Մամիկոնեան» անունով ողբերգութիւնը: Ընկերութեան անդամները երեք կարգի կը բաժնուին. 1. Հիմնադիր կամ գործօն անդամներ, 2. Պատուոյ անդամներ եւ 3. Պարզ անդամներ (Լոյս, անդ՝ էջ 204—205):

Ա. Խորասանճեան 1875 Օգ. 17ին Ակնէն կը գրէ որ Ուսումնասիրական Ընկերութեան «երրորդ տարեդարձի հանդէսը տեղի ունեցաւ ամսոյս 10ին ի ներկայութեան 50—60ի չափ արդոյ ուսումնասէր հանդիսականաց...» (Հայրենիք, Կ. Պ. 1875, Թ. 269):

1881 Մայիսին կը կոչուի «Ուսումնասիրաց» Ընկերութիւն. ունի 31 անդամ եւ «կը ճգնի Թանգարանով Ընթերցարանի մը շինութեան». «Կ'երեւի թէ հոյակապ շինուածք մը պիտի ըլլայ» (Մասիս, Կ. Պ. 1881, Թ. 3909):

### Տ. ԲԱՐԵԿԱՄ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

Բողոքական Հայոց կողմէ հիմնուած է 1877 Յունուար 1ին: Իր Կանոնագիրը, բաղկացած 7 Յօդուածէ՝ տուած է Աւետաբեր (Կ. Պ. 1877, Թ. 17): Ընկերութեան նպատակն է. «Հայ երիտասարդաց բարոյական վիճակին յարմար տետրակներ տպել» (Յօդուած 1.). Անդամ կրնայ ըլլալ 25 տարե–

*կանէն վար եղողը* (*Յօդ.* 5)։ *Ընկերութեան Վարչութիւնը կը կազմեն* Ատենապետը, Գրագիրը եւ Գանձապետը։ *Ատենապետն էր* Մ. Սմբատ Գաբրիէլեան, *իսկ Գրագիրը՝* Աւետիս Ժամկոչեան (Աւետաբեր, *անդ*)։

9. ՇԱՀԱԲԵՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877—78)

*Կը յիշէ* Գարեգին Ծ. Վ. Սրուանձտեանց՝ *իր մէկ Տեղեկագրին մէջ, որ կը կրէ սա խորագիրը. «Վիճակագրութիւն Ակնայ Առաջնորդութեան», գրուած* 1878 *Յուլիս* 13*ին։ Նա կը գրէ.* «Շահաբեր Ընկերութիւն, *Հասոյթ բաժանորդներէ։ Նպատակն է իրենց անձնական ապրուստ ըստ չափու ապահովել եւ եղած շահուց հարիւրին* 10 *յատկացնել վարժարանին։ Այժմ* (1878*ին*) *ունին* 500 *ոսկի օժանեան։ Կարեւոր անդամք են՝* Մանուկ Գալէնտերեան, Գէորգ Ցնծայեան, Յակոբ Գորեան, Ստեփան Ղասապեան, Նիկողոս Խայասեան եւ Առաքել Սիրանեան» (Աստղաբերդ, *Կ. Պ.* 1951, *Թ.* 5—6, *էջ* 12)։

*Հիմնադրութեան թուականը ճշդուած չէ։ Կրնայ* 1877—78*ին հիմնուած ըլլալ կամ քիչ մ'աւելի առաջ։*

10. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Հիմնուած է* 1879 *Յուլիս* 1*ին «խիստ մեծ մասը* երիտասարդներէ կազմեալ *եւ նպատակ ընտրած է Ակնայ երիտասարդաց ըստ կարելւոյն ուսումներ աւանդել,* կիրակ-

նօրեայ Ընթերցարան մ'ունենալ եւ ուրիշ ազգօգուտ ձեռնարկութիւն մ'ընել» (Մասիս, 1881, Թ. 2909)։ 1881ին 60 անդամ ունէր։ Իր հիմնումէն սկսած բացած է Ընթերցարան մը, ուր կը հաւաքուէին անդամ եւ ոչ անդամ եղող անուս հայ երիտասարդներ, որոնք ցորեկները արհեստով կը զբաղէին, իսկ իրիկունները կը հաւաքուէին այս Ընթերցարանը թէ՛ ուսում առնելու, թէ՛ լսելու ընթերցումներ եւ թէ լրագրական լուրերն առնելու համար։ Ընկերութիւնը կու տայ նաեւ 2 ներկայացում. «Տրդատ Մեծ» եւ «Անի քաղաքի կործանումը». վերջին ներկայացումը կը կրկնուի կիներու համար, «ուր կանայք առաջին անգամ տեսան ներկայացում եւ մեծապէս զարմանալով եւ ուրախանալով՝ առաջարկեցին Ընկերութեան որ երբ այնուհետեւ արական սեռին ներկայացում տայ՝ կրկնէ նաեւ իրենց սեռին ալ» (Մասիս, 1881, անդ)։

Այս տեղեկութիւնները տուողն է Ակնէն Վ. Յ. Ա. Խպրանեան՝ 1881 Մայիս 13 թուականով։ Ինչպէս տեսանք՝ հիմնումի թուական յիշած է 1879 Յուլիս 1։ Մինչ Մասիսի ուրիշ մէկ թղթակիցը, որ 1881 Ապրիլ 22ին գրած է՝ Ընկերութեանս հիմնումի թուական տուած է 1879 Սեպ. 1 (Տե՛ս Մասիս, 1881, Թ. 2889)։ Մենք Խպրանեանինը աւելի ճիշդ կը համարինք, որովհետեւ վերջինս կը թուի թէ իբրեւ անդամ Ընկերութեան կը գրէ.

## 11. ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Կազմուած է* Պոլիս 1879 *Յուլիս 22ին՝ 100ի չափ պանդուխտ Ակնցիներէ*: *Նպատակն է Ակնի* «Ազգային վարժարանաց նիւթական եւ բարոյական բարւոք մատակարարութեան նպաստել» (Մասիս 1881, *Թ*. 2838 *եւ Թ*. 2889): 1879 *Սեպտեմբերին Պոլսոյ մէջ* 400 *անդամ գրուած էին. իսկ* Ակնի մէջ *«բաւական շատ» անդամ գրուող եղած է, կը գրէ Թղթակից մը* (Թերճէմանը էֆքեար, *Կ. Պ*. 1879, *Թ*. 682):

*Հիմնադիրներէն կը յիշուին հետեւեալները*. Յակոբ Գորեան, Յարութիւն Րէյիզեան, Զարեհ Թորոսեան, Ս. Դաւթեան, Փիլիպպոս Քեչեան, Ստ. Բարունակեան, Ղուկաս Բոիկեան, Յարութիւն Աքգարեան, Գ. Փանոսեան, *որոնց ծրագիրն եղած է «հիմնելու* Նոր Ակն քաղաք մը, *աւելի ապահով եւ տնտեսական առաւելութիւններ ունեցող վայրի մը վրայ»* (Ակն եւ Ակնցիք, *Փարիզ* 1952, *էջ* 161—62):

*Ընկերութեան անդամավճարն է չարաթական* 30 *փարա եւ ամսական* 3 *դահեկան* (Մասիս, 1881, *Թ*. 2838): Սմբատ (Մասիս, *անդ*) *կը գրէ որ շատ եռանդով սկիզբ եղաւ Ընկերութեան, սակայն շուտով մարեցաւ եռանդը*:

*Ընկերութիւնը* 1879*ի աշնան* նիւղ մը *կ՚ունենայ* Ակն քաղաքի մէջ *եւ կը հրատարակէ* Ա. տարուան Հաշուեցոյցը (Մասիս,

1880, *Թ.* 2562. 1881, *Թ.* 2889): *Կ'երեւայ թէ ուրիշ տեղ ալ կ'ունենայ ճիւղեր:*

Պոլսոյ մէջ *Գործադիր ժողովը կազմած են.*

*Յ. Պ. Բայխեան* — *Ատենապետ*
*Հ. Դուիթեան* — *Ատենադպիր*

*Ասոնք արդէն* 1879 *Օգոստ. 8ին կ'իմացնեն թէ Ակնայ մէջ ունին* «Արամեան Ուսումնարան»*ը, որուն* 30 *գիրք նուիրած է Պոլսոյ «Դպրոցասիրաց–Արեւելեան» Ընկերութիւնը* (Մասիս, 1879, *Թ.* 2399, *Օգոստոս*):

## 12. ՆԵՐՍԷՍԵԱՆ ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Հիմնուած է* 1879 *Սեպտեմբեր—Հոկտեմբերին՝ Ակնի* վարի թաղի *մէջ* (Թէրճէմանը էֆքեար, 1879, *Թ.* 717 *Հոկտ.* 19): 1880 *Փետրուարին կը տողէ թղթակից մը թէ «Վարի թաղի Ընթերցասիրաց Ընկերութիւնը շատ աշխոյժ է բոլորին ուշադրութիւնը գրաւած»* (Թէրճ. էֆքեար, 1880, *Թ.* 821): *Ընկերութիւնը* 1880*ին ներկայացում կու տայ* (*Անդ՝ Թ.* 1011):

## 13. ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

*Կազմուած է* 1880 *Մարտ* 12*ին: Նպատակն է.* «Երեկոներն եւ Կիրակի օրերն ընթերց–

մամբ պարապիլ Ս․ Գրոց եւ Ազգ․ Պատմութեան եւ այլ քարոյական մատենից միջոցաւ» (Մասիս, 1881, Թ․ 2889)։

*Ուրիշ տեղեկութիւն չունինք։ Ունեցա՞ծ է* Կանոնագիր։

## 14․ ԽՆԱՄԱԿԱԼՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1881)

Վ․ Յ․ Ա․ Իպրանեան *վերոյիշեալ յօդուածին մէջ որ «Ազգային վիճակ յԱկն» խորագիրը կը կրէ՝* 1881 *Մայիս* 13*ին կը գրէ Ընկերութեան մասին․* «Խնամակալուհեաց Ընկերութիւն... *կազմեալ է* իգական սեռէ *եւ* հաստատեալ 2—3 ամսէ հետէ, *որոյ նպատակն է* իրենց սեռի դպրոցին խնամակալութիւնն ստանձնել եւ ծախսը հոգալ *եւ որոյ անդամոց թիւն է* 50—60 *եւ իրենց... գործակատարն է* Արժ․ Տէր Յարութիւն Քհնյ․ Յակոբեան» (Մասիս, 1881, Թ․ 2889, *Մայիս* 13)։

*Հիմնումի թուականն է, ուրեմն,* 1881 *Փետրուար—Մարտ*։

## 15․ ՄԻԱՑԵԱԼ ԸՆԿ․ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԵՒ ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԱԿՆԱՑ (1881)

1872*ի* «Ուսումնասիրական *Ընկերութիւն*»*ը եւ* 1879*ի* «Ընթերցասիրաց *Ընկերութիւն*»*ը* 1881 *Ապրիլ* 15*ին Ընդհ․ ժողով գումարելով՝ «միաձայն հաւանութեամբ» կը միանան՝ «երկու Ընկերութեանց նպատակը միեւնոյն ըլլալով» եւ կը կազմեն* «Միացեալ

Ընկեր․ Ուսումնասիրաց եւ Ընթերցասիրաց Ակնայ» (Մասիս, 1881, *Թ*․ 1888—89)։

### 16․ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1881)

*Կը յիշուի* 1881 *Յուլիս* 27*ին*, *մինչդեռ* 1881 *Ապրիլ* 22*ին* *Ակնէն եղած թղթակցութեան մը մէջ*, *ուր Ակնի հին ու նոր Ընկերութիւններու վրայ կը խօսուի*՝ (Մասիս, 1881, *Թ*․ 2889) *տակաւին* անծանօթ է «*Կրթասիրաց*»*ը*։ *Հետեւաբար հարկ է ընդունիլ թէ Ակնի* «Կրթասիրաց Ընկերութիւն»*ը կազմուած է* 1881 *Մայիս—Յունիսին*։

Ա․ Թովմասեան, *Ակնէն* 1881 *Յուլիս* 15/27*ին* *Ակնայ* «Ընթերցասիրաց Ընկերութեան» *Բ․ տարեդարձի հանդէսին վրայ գրած թղթակցութեան մէջ կ՚ըսէ որ հանդէսին* «*ներկայ գտնուեցան* քաղաքէն *Ուսումնասիրաց*, *Լուսաւորչականաց եւ* Կրթասիրաց Ընկերութիւնները, *որք հանդէսին մէջ առանձին խումբ մը կը կազմէին*» (Մասիս, 1881, *Թ*․ 2955)։

*Այդ հանդէսին մէջ* «Կրթասիրաց»*ի կողմէ կը խօսի* Լեւոն Պ․ Ասատուրեան (*Անդ*)։

### 17․ ԱԿՆԱՅ ԿՐԹԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1882)

*Վերոյիշեալ* «*Միացեալ Ընկ․ Ուսումնասիրաց եւ Ընթերցասիրաց Ակնայ*» *կարճ տեւողութիւն մը միայն կ՚ունենայ*։ 1882

Յունիս 1ին «Ուսումնասիրաց», «Ընթերցասիրաց» եւ կազմալուծեալ «Արամեան» Ընկերութիւնները անգամ մըն ալ համաձայնութեան կու գան եւ միանալով՝ կը կազմեն «Ակնայ Կրթական Միութիւն»ը, որ կ՚ունենայ իր Մասնաճիւղը Պոլսոյ մէջ։ Ասոր նպատակը կ՚ըլլայ․ «Ակնայ մէջ աղջկանց վարժարան մի բանալ եւ նախորդ Արամեան Ընկերութեան պատրաստ դրամը յատկացնել վարժարանի նախնական ծախուց» (Մասիս, 1882, Թ․ 3246, Յուլիս 27 եւ 1883 Թ․ 3450)։

Մանզումէի էֆքեար (Կ. Պ. 1882, Թիւ 5019) եւս կը հաղորդէ որ 1882 Յուլիս 25ի որոշումով «Արամեան Ընկերութիւն»ը ինքզինքը լուծուած կը համարի եւ իր գանձանակին մէջ եղած 4745¼ ղուրուշ դրամը կը յանձնէ իր ծրագրին գործադիր «Ակնայ Կրթական Միութեան» Կ. Պոլսոյ Մասնաճիւղին։

Սխալ է, հետեւաբար, «Ակն եւ Ակնցիք»ի գրածը թէ․ «Արամեանի ձախողանքէն յետոյ Ազգասիրականին եւ Ուսումնասիրականին Պոլիս գտնուող անդամները 1882ին կը կազմեն «Կրթական Միութիւն» մը» (Ակն եւ Ակնցիք, Փարիզ 1952, էջ 162)։ Ո՛չ թէ «Ազգասիրական» եւ «Ուսումնասիրական» Ընկերութիւններու, այլ «Ուսումնասիրական», «Ընթերցասիրաց», «Արամեան» Ընկերութիւններու միացումով է որ կը կազմուի «Ակնայ Կրթական Միութիւն»ը։ Հիմ-

*նուամի թուականն է* 1882 *Յունիս* 1 (Մասիս, 1882, Թ. 3246):

*Միութիւնը կ՚ունենայ իր* Կանոնագիրը, *զոր խմբագրած է* Գ. Ծ. Վ. Սրուանձտեանց (Մասիս, 1883, Թ. 3450): *Տեսած չենք:*

18. ՆԵՐՍԻՍԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1883)

*Կազմուած է* 1883*ի սկիզբները: Կը յիշուի* 1883 *Մարտ* 15*ին: Թղթակիցը* — Հ. Յ — *կը գրէ վերոյիշեալ թուականով. Ակնայ* Ս. Գէորգ «*Թաղին* Ներսիսեան Օրիորդաց Վարժարանին *մի խնամակալութիւն կազմուեցաւ, որոյ անդամքն են հետեւեալ Համեստափայլ Տիկնայք.*

| | |
|---|---|
| *Ա. Պ. Նարլըեան* | *Ատենապետ* |
| *Խ. Գ. Տէր–Գրիգորեան* | *Ատենադպիր* |
| *Մ. Դ. Գույումճեան* | *Գանձապետ* |
| *Ե. Պ. Քէլլէկճեան* | |
| *Տ. Պ. Մազմանեան* | |
| *Պ. Րէյիսեան* | |

Սոյն Համեստափայլ եւ պատուաւոր Տիկնանց ջանիւք *եւս Ընկերութիւն մը կազմուեցաւ* «Ներսիսեան Ընկերութիւն» *անունով, որոյ նպատակն է* Օրիորդաց Վարժարանի աղքատիկ աղջկանց դպրոցական առարկայները ձրի մատակարարել *եւ անոնց դաստիարակութեանը հսկել... Սոյն Ընկերութեան անդամուհեաց թիւը* 52 *եւ ամսա–*

*կան բաժինը 1 դահեկան է»* (Մասիս, 1883, *Թ*. 3450, *Մարտ* 15):

19. ՆԱՐԵԿԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884)

*Հիմնուած է* Պոլիս 1884*ի դարնան*, *«որ իր մէջ կ՚առնէ քաղաքի* (*Ակն*), *Ապուչեխի*, *Կամարակապի*, *Կարուչլայի*, *Լիճքի եւ Բենկայի Պոլիս գտնուող երիտասարդութիւնը*: *Իրենց ծրագիրն է օգնել դպրոցներուն*… այս Միութեան կեանքէն ալ կարճ կը տեւէ» (*Ակն եւ Ակնցիք*, *անդ*՝ *էջ* 164):

*Ձենք գտած հին*, *ժամանակակից տեղեկատուութիւն մը*:

20. ԱԿՆԱՑ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1898)

*Կազմուած է* Բոստոն (*Ամերիկա*) *գաղթող Ակնցիներէ* 1898*ի ձմեռը*, *նպատակ ունենալով օժանդակել Ակնայ վարժարաններուն չքաւոր աշակերտներուն*: *Կ՚ունենայ* 30*է աւելի անդամներ*: *Իր Վարչութիւնը ահաւասիկ*.

| | |
|---|---|
| *Միքայէլ Եէնիդոմչեան* | *Ատենապետ* |
| *Գրիգոր Պալթայեան* | *Ատենադպիր* |
| *Նիկողոս Հօփիկեան* | *Գանձապահ* |

*Ընկերութիւնը* 1900*ին Ակնայ Առաջնորդարանին կը ղրկէ* 300 *դոլար*՝ խասկելեան-ներու *միջոցաւ*: *Տեւած է մինչեւ* 1910 (Ակն եւ Ակնցիք, *անդ*՝ *էջ* 795—96):

### 21. ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1900)

Հիմնուած է 1900 Յունուար 1ին Գահիրէի (Եգիպտոս) մէջ։

(Արշալոյս, Գահիրէ 1900, թ. 66)։

### 21ա. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ (1901)

Կը հիմնուի 1901 Նոյեմբերին (Արեւելք, Կ. Պ. 1904, թ. 5637)։

### 22. ՆԱՐԵԿԵԱՆ ԸՆԿ. ԱԿՆԱՅ ԵՒ ԹԵՄԵՐՈՒ (1908)

Ինչպէս չեչտեցինք վերը՝ 1884ի Ընկերութիւնը կարճ կեանք մը ունեցեր է եւ ժամանակակից ոչ մէկ հայ թերթ յիշատակած է զայն։ Հետեւաբար կարելի է նոր Ընկերութիւն մը նկատել նոյնանուն այն Ընկերութիւնը, որ 1908ին հիմնուած է։ 1908ի Սահմանադրութեան յաջորդող օրերուն Պոլսոյ Ակնցիք — քաղաքէն ու գիւղերէն — կը հիմնեն «Նարեկեան Ընկերութիւնը Ակնայ եւ թեմերու»։ Հիմնումի ճշգրիտ թուականն է 1908 Նոյեմբեր 1։ Ընկերութեան նպատակն է. «Բոլոր Ակնցի ազգայիններու միջեւ ընդհանուր միութեան կապ մը հաստատել... կրթական եւ տնտեսական վիճակը բարւոքել եւ յառաջացնել» (Մանզ. Էփէճեար, Կ. Պ. 1908, թ. 2272)։ Անմիջապէս կազմուած է Ծրագիր–Կանոնագիր մը։ Իսկ անդրանիկ Վարչ. ժողովը ունեցած է սա կազմը.

Գէորգ Գալճնտէրեան, Գրիգոր Մարգարեան, Մարտիրոս Պոսթանճեան, Յակոբ Գորեան, Նշան Թորոսեան, Սարգիս Պարսամեան, Սրապիոն Պէկեան: Իր Գործադիր Ժողովին անդամներն էին. Գարեգին Խմիրգեան, Գրիգոր Գորեան, Գրիգոր Մազմանեան, Եդուարդ Հազարեան, Լեւոն Հընդլեան, Հրանդ Թորոսեան, Մարտիրոս Քէպապճեան, Մելքոն Պարսամեան, Մերուժան Պարսամեան, Յարութիւն Տիրատուրեան, Յովհաննէս Ամիրեան, Յովհաննէս Պօղոսեան, Սահակ Տէմիրճեան (Մանգ. էփքեար, անդ):

## 23. ԱԿՆԱՑ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909—10)

Կազմած են Նիւ Ծըրզի եւ Նիւ Եորք բնակող երեսունի չափ պանդուխտ Ակնցիներ, նպատակ ունենալով «հայրենիքի կրթական գործին ոյժ տալ կարելի ամէն միջոցներով» (Ազատամարտ, Կ. Պ. 1910, Թ. 1074, Մարտ 5):

Հիմնումը կրնայ եղած ըլլալ 1909ի վերջը կամ 1910ի սկիզբը: Եղբարք Գաբրիէլեան հաւաքած էին 200 տոլար՝ Ընկերութեան նպատակին գործածուելու համար (Անդ):

## 24. ՆԱՐԵԿԵԱՆ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

1908ին Պոլսոյ մէջ կազմուած «Նարեկեան Ընկ. Ակնայ եւ Թեմերու» Ընկերու–

թիւնը Գահիրէի մէջ Մասնաճիւղ մը կ'ունենայ սա տիտղոսով. «Ակնայ եւ Թեմերու Նարեկեան Կրթասիրաց Ընկերութիւն», որ 1910 Յուլիս—Օգոստոսին 61½ անգլիական ոսկի կը ղրկէ Պոլսոյ Ազգ. Խնամատարութեան (Ժամանակ, Կ. Պ. 1919, Թ. 3594):

### 25. ԱԿՆԱՅ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1918—19)

Պոլսոյ մէջ հիմնուած է — թերեւս իբրեւ ճիւղ մը Բոստոնի կամ Նիւ Ջըրզիի Ընկերութիւններու — Ուսումնասիրաց Ընկերութիւն մը 1918—19ին: Ահա՛ իր կոչը 1919 Յուլիսին. «Ակնցի հայրենակիցներէն անոնք որ աքսորավայրերու եւ կամ ուղղակի Ակնայ մէջ կը գտնուին, օգնութիւն ստանալու համար թո՛ղ դիմեն Ակնայ Ուսումնասիրաց Ընկերութեան կեդր. Վարչութեան» (Ժամանակ, Կ. Պ. 1919, Թ. 3567):

### 26. ԱԿՆԱՅ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1945)

Կազմուած է Ամերիկա 1945 Յունուար 20ին՝ ներկայութեամբ 26 Ակնցիներու: Ընտրուած Վարչութիւնը հետեւեալն է.

| | |
|---|---|
| Գրիգոր Գալուստեան | Ատենապետ |
| Գրիգոր Դշխոյեան | Փոխ-Ատենապետ |
| Խաչիկ Նետիրեան | Ատենադպիր |
| Երուանդ Գաբրիէլեան | Փոխ-Ատենադպիր |
| Գարեգին Գապուլեան | Գանձապահ |

Ահա իրենց նպատակը. 1. Օգնել... աղետեալ Ակնցի հայրենակիցներուն, 2. Կազմակերպել բոլոր Ակնցիները եւ հիմնել Նոր Ակն մը Հայաստանի մէջ. 3. Հաղորդակցութեան մէջ մտնել սփիւռքի Ակնցիներուն հետ եւ հետաքրքրուիլ անոնց վիճակով։

Այս Միութիւնը ընդարձակ գործունէութիւն կ՚ունենայ մինչեւ օրս։ Իր կարեւոր ձեռնարկն է հրատարակութիւնը «Ակն եւ Ակնցիք» (Փարիզ 1952, էջ 1045) բաւական խնամուած հատորին՝ աշխատասիրութեամբ Առաքել Քէչեանի եւ Մկրտիչ Պարսամեանի։

## ԱԿՆԱՅ ԳԻՒՂԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ
## ԱՊՈՒՉԵԽ ԳԻՒՂ

### 1. ԱՐՇԱԼՈՅՍ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1857)

Հիմնուած է 1857ի սկիզբը։ Պոլսոյ Մասիսը (1857, Թ. 305) նախ անորոշ յիշատակութիւն մ՚ընելէ վերջ՝ 1858 Յունուար 10ին կը գրէ. «Անցեալ տարւոյն սկիզբները լրագիրս համառօտիւ յիշեր էր Ակնայ Ապուչեխ Գիւղի բարեպաշտ հայ ժողովըրդեան ցոյց տուած ուսումնասիրական գովելի ջանքը, որով բաժանորդական Ընկերութիւն մը մէջերնին կազմեր ու իրենց Գեղին դպրոցը բարեկարգելու ձեռք զարկեր էին։ Այս օրերս գիր առինք նոյն Ապուչեխ Գեղէն

որ յիշեալ Ընկերութիւնը ընդ բարեխնամ պաշտպանութեամբ Ակնայ Գեր. Սրբ. Առաջնորդին եւ ընդ նախագահութեամբ Պէկեանն յարք. Սուքիաս աղային՝ դպրոցին բարեկարգութեան... սկսեր է» (Մասիս, կ. պ. 1858, թ. 361):

1858ին Ընկերութեան նախագահ ընտրուեր է Աբրահամ Պէկեանն, իսկ Գանձապետ՝ Արիստակէս Տէր-Պօղոսեանն: Պոլսոյ Ապուչեխցիներ 16,000 ղուրուշ նուէր կը ղրկեն իրենց Գիւղի դպրոցին (Անդ):

Ի՞նչ էր Ապուչեխի այս Ընկերութեան անունը: — Ինչպէս տեսանք՝ ժամանակակից թերթը՝ Մասիս չէ աւանդած զայն: «Սկսնակ Բանասէր» (Դոկտ. Տաղաւարեան) 1898ին ունի լոկ յիշատակութիւնս. «Ակնայ Ապուչեխ գիւղի Ընկերութիւն (1858)» (Արեւելք, կ. պ. 1898, թ. 3854), սխալ ըլլալով իր տուած հիմնումի թուականը — 1858:

Շատ ուշ — 1871 Մարտին — առաջին անգամ Պոլսոյ Օրագիրը (1871, թ. 407) կը յիշէ «Ապչեխ Գիւղի Արշալոյս բարենպատակ Ընկերութիւնը»: Յետոյ Պոլսոյ Մամուլ գաւեշտաթերթը եւս 1872ին կը յիշէ սա ձեւով. «Ապջուղայ Գիւղին Արշալոյս անուամբ... Ընկերութիւնը իւր... անցեալ տարի հեղինակած 276 Յօդուածէ բաղկացեալ Կանոնագիրը, որ նոր Գիւղացւոց ապստամբաց կողմէ չընդունուեցաւ...» (Մամուլ, կ. պ. 1872, թ. 209, էջ 20):

Պոլսոյ Հայրենիք (1872, թ. 92) թերթի մէջ եղած քննադատութեան մը պատասխանելով՝ Պոլսոյ Ապուչեխցիները կը գրեն. «...Մինչդեռ... բազմաթիւ Ընկերութիւններ իւրեանց խարդախ գործերուն՝ հիմնայատակ կը լինէին, սոյն (Արշալոյս) Ընկերութիւնը անյողդողդ իւր ջանից եւ արդեանց մէջ օր քան զօր կը յառաջդիմէ» (Մէճմուայը Հավատիս, կ. պ. 1872, թիւ 1036) :

Տեսանք թէ Ընկերութեան սկզբնական նպատակը Գիւղի դպրոցին բարեկարգութիւնը եղած է : 1871ի ատենները Ընկերութիւնը կ՚ունենայ նոր ուղղութիւն մ՚ալ. կը կոչուի «Արշալոյս Առեւտրական Ընկերութիւն» (Մէճմ. Հավատիս, անդ), սակայն առաջին նպատակը ջնջուած չէ : Ասոր ապացոյց է սա փաստը որ այդ ատեն — 1872ին — Ընկերութեան անդամ, Գանձապետ եւ Տնօրէն է Ապուչեխի վարժարանին ուսուցիչը՝ Յ. Խախվէնեան (Մէճմ. Հավ., անդ) :

2. «ԱՐՇԱԼՈՅՍ» ԵՐԻՏ. ՄԻՈՒԹԻՒՆ (1874)

Հին (1857ի) «Արշալոյս»ը անծանօթ եղած է «Ակն եւ Ակնցիք»ի խմբագիրներուն : Ասոնք կը յիշեն 1874ին կազմուած մը, որ կը կոչուի, — «Արշալոյս» երիտասարդաց Միութիւն» : Հիմնադիրներն են Շաւարշ Հովեան, Հմայեակ Ազատեան, Եղիշէ Վարդանեան, Յարութիւն Պէկեան, Ստեփան

Ագնաւորեան, Սրապիոն Փափազեան, Ասատուր Պարսամեան, ՄուրատՍտեփանեան, *եւ ուրիշներ ···որոնք կը հրատարակեն* «Մտրակ»*ը: Կը հիմնեն* Լսարան *եւ* Թատրոն *եւ կը կազմեն ճոխ* Մատենադարան» (Ակն եւ Ակնցիք, *անդ՝ էջ* 163):

*Ընկերութեանս յիշատակութեան չենք հանդիպած հին հայ թերթերու մէջ:*

3· ՎԱՐԱԳԱՅ ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

*Կազմած են* Պոլսոյ *պանդուխտ Ապուչեխցիներու «երիտասարդք՝ յիշեալ Գիւղին մէջ* աղջկանց վարժարան մը բանալու նպատակաւ» (Մասիս 1879, *Թ*· 2250):

Մասիս *առաջինն է այս լուրը տուողը, սակայն չի ճշդեր* հիմնումի թուականը: *Այդ թուականը տուած է Ակնցի յօդուածագիր մը* 1881 *Ապրիլ* 22*ին, որուն համեմատ Ապուչեխի այս Ընկերութիւնը հիմնուած է* 1878 *Դեկտ*· 9*ին* (Մասիս, 1881, *Թ*· 2889): Մասիսի *այդ յօդուածագիրը կ'աւելցնէ որ «Յաւելով կը լսենք թէ այս Ընկերութիւնը* լուծուած է վերջին օրերս» (*Անդ*):

*Ընկերութիւնս կը յիշէ Պոլսոյ* լրագիր *թերթը* (1879, *Թ*· 1040): *Յիշատակած է նաեւ* Սրուանձտեանց (*Թորոս Աղբար*, *Ա*·, *էջ* 259):

*Ընկերութիւնը* 1880 *Սեպտ·ին բացած է Գիւղին մէջ* աղջկանց վարժարանը (Թերճ· էֆքեար, *Կ*· *Պ*· 1880, *Թ*· 975):

### 4. «ՎԱՐԱԳ» ԵՐԻՏԱՍԱՐԴՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

*Կազմած են* Պոլսոյ *Նժդեհ Ապուշեխցիք* 1911*ի գարնան. կը յիշուի* 1911 *Յուլիսին եւ իր* Կանոնագիրը *վաւերացումի ղրկած է Պատրիարքարան* (Ազատամարտ, *Կ. Պ.* 1911, *թ.* 646 *եւ* Ժամանակ, 1911, *թ.* 853)։

## ԲԵՆԿԱ–ԲԻՆԿԵԱՆ ԳԻՒՂ

### 1. ԵՐԻՏԱՍԱՐԴԱ՞Ց ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1859—60)

Բենկա *կամ* Բինկեան *Գիւղի հնագոյն Ընկերութիւնը կը յիշուի շատ ուշ* — 1875*ին* —. *հակաճառութեան մ'առթիւ* Մանզումէի էֆքեար *թերթին մէջ* (1875, *թ.* 2832)։ *Դժբախտաբար Վիեննայի մեր հաւաքածոյին մէջ* Մանզումէի *այդ թիւը* — 1875, *թիւ* 2832 — կը պակսի։ *Այդ թիւին մէջ առաջին անգամ յիշուած է Բենկայի* «Նախնի Երիտասարդաց Ընկերութիւնը»։ *Այս յիշատակութիւնը ծանօթ է մեզի Բենկայի* «Մեսրոպեան Վարժարանի» *Տեսուչ՝* Աստուածատուր Խ. Մեծատուրեանի *մէկ թղթակցութենէն, որ պատասխան մ'է* Մանզումէի *թիւ* 2832*ի յօդուած–նամակին։ Դժբախտաբար Մեծատուրեան, որ հիմնադիրն է Ընկերութեան՝ չի ճշդեր ո՛չ* անունը *եւ ոչ ալ* հիմնումի թուականը *այդ Ընկերութեան։ Ահա Աստուածատուր Խ. Մեծատուրեանի յիշատակութիւնը.* «Նախնի Երիտասարդաց Ըն–

կերութիւն *բաժն ալ* մեր եւ Տէր-Յակոբեան Աղեքսանդր ազայի յատուկ ջանիւքը ժամանակաւ հաստատուած Ընկերութիւնն է, *որոյ գօնօօլիանները այժմ թաղ. մնացուկն է...»* (Մանզումէի էֆքեար, *Կ. Պ.* 1875, *Թ.* 2866, *Յուլ.* 9): *Արդեօք* «Երիտասարդա՞ց *Ընկերութիւն*»:

*Թէեւ Ընկերութեանս* անունը *չի տար, սակայն հիմնումի մօտաւոր ժամանակը կը ճշդէ* Յովհաննէս Մ. Տախեան, *որ* 1869 *Փետր. 7ին կը գրէ. «Բնիկեանի Վարժարանը* ...ունէր անկէ 10 տարիի չափ յառաջ 18—20 *հազար ղուրուշի չափ գումար մ'ալ,* աղջկանց վարժարանի անունով կազմուած Ընկերութեան *մ'արդիւնքը, որուն ես ալ բաժանորդ էի եւ այս գումարը եկեղեցւոյն անցած է»* (Մասիս, *Կ. Պ.* 1869, *Թ.* 905):

*Հիմնումը կրնայ եղած ըլլալ, ուրեմն,* 1859—60*ին*:

## 2. ՀԱՅՐԵՆԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865—66)

*Կը յիշուի* 1869 *Յունուար* 31*ին* (Ծիածան, *Կ. Պ.* 1869, *Թ.* 9): *Որքան կ'երեւայ՝* Պոլիս *հիմնուած է: Հիմնադիրներն են Բնիկեանցի* «առոյգ երիտասարդներ»: *Հիմնադրութեան* ժամանակի *մասին կ'ըսուի* 1869 *Յունուար* 31*էն* «քանի տարի յառաջ», *այսինքն՝* քանի մը տարի առաջ: *Որով կարելի է նկատի առնել իբր* 1865—66:

*Պոլսոյ* Մասիս*ի քով ալ կը յիշուի Ընկե-*

*բութիւնս Բինկեանցի* Յովհաննէս Շախեանի *կողմէ՝* 1869 *Փետր. 7ին* (Մասիս, 1869, *թ.* 905):

*Ընկերութիւնը ունեցած է դրամագլուխ մը — «երկու հարիւր հատ հարիւրնոց եւ երկու հատ տասնոց քօնսօլիտ»* (Ծիածան, *անդ*):

3. ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

*Բինկեանի* Մեսրոպեան վարժարանի *Տնօրէն-ուսուցիչ* Աստուածատուր խ. Մեծատուրեան *է հիմնադիրը Ընկերութեան, որուն մասին ինքը վերյիշեալ յօդուած-նամակին մէջ, գրուած* 1875 *Յունիս* 20*ին, կը գրէ (պատասխանելով* Մանզումէի Էֆքեարի *թ.* 2832*ի մէջ երեւցած հակառակութեան մը)*. «Աշակերտաց Ընկերութիւն *բառը, որ դպրոցի մէջ* վեց տարիէ հետէ *մեր հաստատած* Սանուց Ընկերութիւնն *է ... Այս Ընկերութիւնը* սաներէն կազմուած ժողով եւ միանգամայն կանոնաւոր տետրակ ունի *եւ արդիւնքն եղած է մինչեւ հիմայ* 200էն աւելի Հայ մատենագրութիւններ զետեղել իր Թանգարանին (*Գրադարան*) *մէջ...»* (Մանզումէի Էֆքեար, 1875, *թ.* 2866):

1875*էն* վեց տարի առաջը *կ՚ըլլայ* 1869 *հիմնումի տարին:*

1884*ին դեռ կը շարունակէ Ընկերութիւնը իր գործունէութիւնը եւ Բենկայի աչքի ըիրն է ան. — Թէ՛ Գիւղին եւ Թէ Պոլ–*

ույ մէջ մանաւոր դրամահաւաք կ'ըլլար ա-
նոր նպատակներուն գործածուելու համար :
1884ին 2130 ղուրուշ հաւաքած էին : Այդ
տարին Ընկերութեան Ատենապետն է Նշան
Կոնչէկիւլեան , որ Վարդանանց տօնին հան-
դիսութեան առթիւ Ընկերութեան կողմէ կը
խօսի եւ շնորհակալութիւն կը յայտնէ ժո-
ղովուրդին համակրութեան համար (Տե՛ս
Արեւելք, Կ. Պ. 1884, Թ. 60) :

«Մ. Տ.» ստորագրող թղթակից մը
1893ին կը տողէ. «Ժամանակին «Մանուց
Ընկերութիւն» անուամբ աշակերտական Ըն-
կերութիւն կազմուեր է Վարժարանին նոր
նպաստ մը ձեռք բերելու համար եւ որոշ
գումար մը հաւաքեր է տարուէ տարի : Այդ
գումարով հաստատուեր է Վարժարանին
յատկացեալ փուռ մը», որուն եկամուտով
«աշակերտաց պիտոյքը (թուղթ, գրիչ,
գիրք, թանաք) կը մատակարարուի». «այդ
գումարով եւ դպրոցասէր նախնեաց կտա-
կած մի քանի եկամուտներու արդիւնքով
կազմեր է Բենկալի վարժարանին պէտք
եղած դասական ու գիտական գրքերէ բաղ-
կացեալ կոկիկ Մատենադարան, զոր մինչեւ
այսօր ոչ մի Ազգ. վարժարանի մէջ չէի տե-
սած...» (Արեւելք, 1893, Թ. 2967) :

1909ին վերակազմած է Ընկերութիւնս
Բինկեանցի Յովհաննէս Դանիէլեան եւ «ճո-
խացուցած Մատենադարանը» (Ազատա-
մարտ, 1909, Թ. 49) :

## 4. ԿՐԹԱՍԻՐԱՑ ԱԿՈՒՄԲ (1910)

Պոլիս *կազմուած է՝ նպատակ ունենալով «վերաբանալ Գիւղի աղջիկներու վարժարանը, նպաստել երկսեռ վարժարաններու* (Կանոնագիր Բինկեանի Կրթասիրաց Ակումբի, *Կ. Պ.* 1910, *էջ* 1)։

*Իր* Կանոնագիրը *ունի* 22 *Յօդուած, որ վաւերացնելու ջանք կը թափեն* 1910*ին* (Ժամանակ, *Կ. Պ.* 1910, *Թ.* 543)։ *Ընկերութեան ամսական անդամավճարն է* 2 *դահեկան* (*Յօդ.* 1)։ — *Ընկերութեանս մասին տե՛ս նաեւ* Բիւզանդիոն (1910, *Թ.* 4052, 4074)։ — 1914*ին Ընկերութիւնս կը կոչուի* «Կրթասիրաց Ընկերութիւն» (Ժամանակ, 1914, *Թ.* 1801)։

## 5. ԵՐԿՐԱԳՈՐԾԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

*Հիմնուած է* Պոլիս 1911*ին*։ *Ունի իր* Կանոնագիրը՝ 22 *Յօդուածով՝ հրատարակուած* Մարզուան 1911*ին*։

*Ահա իր* նպատակը. «*Զարգացնել Բինկեանի մէջ երկրագործութիւնը եւ իր նեղ օրերուն մէջ փոխատուութեան ձեւով օգնել երկրագործին*» (Կանոնագիր Երկրագործական Միութեան, *Մարզուան* 1911, *էջ* 3)։

*Ընկերութեան անդամները երեք կարգի կը վերածուին.* — Հիմնադիր, նուիրատու *եւ* պատուոյ *անդամներ. սովորական անդամավճարն է ամսական* 5 *դահեկան* (*Յօդ.* 6)։

### 6. ԲԱՐԳԷՆ ՍԻԻՆԻ ՀԱՅՐԵՆԱԿՑ. ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Կազմուած է Պոլիս 1919 Ապրիլ 6ին՝ 50 անդամներով (Տեղեկագիր Հայրենակցական Միութեանց. Կ. Պ. 1921, էջ 4)։ Մայր Դի- ւանը կը կազմէին.

| | |
|---|---|
| Թադէոս Մեծատուրեան | Ատենապետ |
| Օր. Զարմուհի Մեծատուրեան | Ատենադպիր |

Իսկ Վարչութիւնը՝

| | |
|---|---|
| Յակոբ Հովուեան | Ատենապետ |
| Յարութիւն Միլոյեան | Ատենադպիր |
| Սուրէն Տէր-Յակոբեան | |
| Զարմայր Մեծատուրեան | |

Խորով Եղիկեան (Տեղեկագիր, անդ՝ էջ 13)։

1921ին կը յիշէ Ընկերութիւնս ժողո- վուրդի Ձայնը (Կ. Պ. 1921, Թ. 678)։

## ՆԱՐՈՒԷՐ ԳԻՒՂ

### 1. ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1866)

Հիմնուած է 1866ի աշնան։ Հիմնադիրն է Նարուէրցի Յովհաննէս Զօրապասեան։ Ըն- կերութեան նպատակն է. «Վասն պիտոյից վարժարանին» (Մասիս Փոքր, Կ. Պ. 1867, Թ. 10)։

## 1· «ԶԱՅՆ ԲԱԶՄԱՑ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Առաջին յիշատակութիւնը* Մանզ· Էֆ–ֆեարէն *ունինք, որ Կամարակապէն* 1870 *Փետր·* 9 *թուականը կրող* Գ· Սարեանի *թըղ–թակցութիւնը հրատարակելով՝ կ'իմացնէ թէ Ընկերութիւնը շատ հակառակութեան, ատելութեան ու չանթի հանդիպելով հան–դերձ՝ կատարեր է իր* «սկզբնաւորութեան հանդէսը» Ս· Կոզմաս վանքին *մէջ: Չ'ըսեր սակայն թէ ե՛րբ հիմնուած է· բայց որով–հետեւ Ընկերութեան Բ· տարեդարձը* 1871 Յունուար 31ին *կը տօնեն* (Օրագիր, *Կ· Պ·* 1871, *Թ·* 407), *հետեւաբար ճշդած կ'ըլլայ, կը կարծենք, թէ Ընկերութեան հիմնումի թուականն է* 1870 *Յունուար* 31:

*Ընկերութեան Վարչութեան, Կանոնա–գրի եւ այլն, մասին տեղեկութիւն չ'աւան–դուիր· սա միայն յայտնի է որ Ընկերութեան Ատենապետն է* Գ· Սարեան (Օրագիր, *անդ*):

*Ընկերութիւնս յիշուած է նաեւ* Հայրե–նիքէն (1871, *Թ·* 35 *Փետր·* 24):

## 2· ԱԶԳԱՆԱԶԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873?)

«Ակն եւ Ակնցիք»*ի անծանօթ մնացած է* Կամարակապ*ի հնագոյն Ընկերութիւնը· —* «Զայն Բազմաց» *Ընկերութիւն: Իրեն համար Կամարակապի հնագոյն Ընկերութիւնն է «Ազգանազեան Ընկերութիւն»ը, որ հիմ–*

նուած է 1873ին (Ակն եւ Ակնցիք, անդ՝ էջ 163) : Նախաձեռնութեամբ կամ թելադրութեամբ խօսրով Մուրատեանի եւ Ազարիա Դերձակեանի կազմած են Ընկերութիւնս՝ Երեմիա Բարդողեան, Գրիգոր Սարեան, Մկրտիչ Մամիկոնեան, Ստեփան Գարակէօզեան, Առաքել Խանդատեան, Նշան Թորոսեան, Կարապետ Ս. Թունեան, Ներսէս եւ Միքայէլ Հալաճեան (Անդ) :

Անգամ մը վերակազմուելէ վերջ՝ Ընկերութիւնը տեւած է մինչեւ 1879 «Ծառայելով դպրոցին եւ ժողովուրդին լուսաւորութեան գործին» (Անդ) : — Ազգանուաղեան Կամարակապի մէջ հիմնած է բեմ, թատրոն եւ «Մտրակ» թերթը, զոր վարած է Գարեգին Պլէօխաճեան (Անդ) :

3· «ՅՈՅՍ Ի ՊՍԱԿ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

Կազմուած է 1875ին : Հիմնադիրներն են · Խաթուն Վառվառէ Ալթունեան, Խանար Խանզատեան, Նազլու Մովսէսեան, Տիրուհի Խէրեան, Թէնսիւֆ Պէռեան, Մարիամ Թորոսեան, Խատէմ Խէրեան, Աստղիկ Սրապեան, եւ այլն : Կամարակապի այս Տիկիններուն կազմած Ընկերութիւնը այնքան շնորհալի եւ օգտաշատ եղած է որ իր տեսակին մէջ անդուգական է թէ՛ նպատակով եւ թէ իր գործունէութեամբ (Ակն եւ Ակնցիք, անդ՝ էջ 164) : Տեւած է 4 տարի · «գիւղին որբ եւ աղքատ աղջիկները տանտիկնու-

թեան պատրաստելով եւ ամուսնացնելով։ Մանաւանդ նշանակալից է տգեղներու ընտրութիւնը, որոնց կարուձեւ սորվեցնելէ զատ, դրամօժիտներ ալ սահմանած է» (Անդ)։

Հայ թերթերու մէջ յիշատակութեան մը չենք հանդիպած։

4. ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1876)

Կամարակապի տարեցները կազմած են «Դպրոցասիրաց»ը 1876ին իբրեւ պահակ հին քարքերուն եւ իբրեւ յիշատակ՝ Գիւղին կը ձգէ ընկուզենիէ շինուած գեղակերտ Մատենադարան մը եւ բազմաթիւ գրքեր (Ակն եւ Ակնցիք, անդ՝ էջ 164)։

Գտած չենք յիշատակութիւն մը հինէն։

5. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

Կամարակապի երիտասարդութիւնը բաւական առենէ ի վեր փափաք ունենալով հիմնել նոր Ընկերութիւն մը՝ նախաձեռնութեամբ Պետրոս Վասիլեանի 1879 Յունիս 1ին հիմը կը դնեն «Ընթերցասիրաց Ընկերութեան»։ Անմիջապէս կը կազմեն Կանոնագիր մը, զոր քանի մը փոփոխութիւններէ վերջ կ՚ընդունին բոլորը։ Ընկերութեան նպատակն է. «Ընթերցանութեան եւ բանախօսութեան միջոցաւ ծաւալել ուսմանց սէրն եւ արծարծել Հայ սրտից մէջ ազգութեան եւ

կրօնասիրութեան ոգի եւ խանդ» (Փունջ, *Կ. Պ.* 1879, *Թ.* 1387, Յուլ. 4)։ *Ամսական բաժանորդագինն է* 3 *դահեկան։ Այս Ընկերութեան մէջ* «անոնք իրաւունք ունին ձրիապէս ուսանելու եւ ուսումնականը պարտք՝ ուսուցանելու» (*Անդ*)։ *Ընկերութիւնը* 1879 *Յունիս* 19*ին ունէր* 54 *կտոր գիրք*։

*Հազիւ անցած տասնեակ մը օրեր Ընկերութեանս հիմնումին վրայ՝ Ընկերութեան անդամները պատշաճ կը համարին Ակնի Ներընտիր* Առաջնորդ Գ. Ծ. Վ. Սրուանձտեանցի *անունով յորջորջել իրենց Ընկերութիւնը եւ ահա կը վերակոչեն զայն* «Սրուանձտեանց Ընկերութիւն» — «տարապայման համակրութեան» *համար, կը գրէ օրուան թերթը* (Փունջ, *անդ*) 1879 *Օգոստոս* 12*ին կը ներկայացնեն «Կոռնակ» ողբերգութիւնը՝ ի նպաստ Ընկերութեան* (Փունջ, 1879, *Թ.* 1403)։ — 1881*ի յօդուածագրին համեմատ Ընկերութեանս նպատակն է՝* «Ուսանիլ եւ ուսուցանել» (Մասիս, 1881, *Թիւ* 2889)։

### 6· ԱԶԳԱՆԱԶԵԱՆ ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ԵՒ ՅՈՅՍ Ի ՊՍԱԿ ՄԻԱՑԵԱԼ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՔ (1879)

*Կազմուած է* 1879 *Յուլիս* 1*ին, նպատակն ըլլալով՝* «Ընթերցանութեամբ պարապիլ եւ յապագային Ուսումնարան մը բանալ, երբ իր նիւթական վիճակը ներէ» (Մասիս, 1881, *Թ.* 2889)։

Կամարակապի աղջկանց Վարժարանը — Սանդխտեան — 1872էն է։ Մինչեւ 1885 կերպով մը շարունակած է իր գոյութիւնը՝ ուսուցիչ ունենալով առաւելապէս այրեր։ 1883—84ի տարիները Կամարակապի «Ազգանադեան, Դպրոցասիրաց եւ Յոյս ի Պսակ Միացեալ Ընկերութիւնք»ը աղջկանց այդ վարժարանին համար պատրաստուած վարժուհի մ'ունենալու համար՝ Սանդխտեանի բարձրագոյն կարգէն Օր. Տիգրանուհի Ջալըգեանը Երզնկայի Օրիորդաց Վարժարանը կը ղրկէ իր ծախքով, որպէս զի հոն թէ՛ հարկ եղած ուսումը եւ թէ մանաւանդ ասղնագործութիւնը սորվելով՝ կարենայ ուսուցչուհի ըլլալ Սանդխտեանի մէջ։ 1885ին Օր. Ջալըգեան ընթացաւարտ ըլլալով՝ Ընկերութիւնը զայն կը ներկայացնէ Կամարակապի Հոգաբարձութեան։ Հոգաբարձութիւնը սիրով յանձն կ'առնէ եւ փոքրիկ հանդէսով մը Սանդխտեան Վարժարանի բացումը կը կատարէ, ուր ճառեր կը խօսուին եւ Օրիորդ Ջալըգեան ալ գրաւոր ուղերձ մը կ'արտասանէ։ Բոլորը ուրախ եւ գոհ՝ շնորհակալութիւն կը մատուցանեն Ընկերութեան իր այդ գեղեցիկ արդիւնքին համար։ «Սրտառուչ էր տեսարանը, կը գրէ Թղթակիցը, զի զառաջինն Կամարակապոյ կրթական յարկի մը ներքեւ Կամարակապցի Օրիորդ մը ուսման զինուով արբեցած՝ ուսումն կը քարոզէր իւր քերց եւ իւր մարց··» (Արեւելք, 1885, Թ. 503)։

## ԼԻՃՔ ԳԻՒՂ

### 1․ …ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

*Պոլսոյ* Հայրենիք (1871, *թ*․ 44, *Ապրիլ* 13) *կը գրէ*․ «*Մայրաքաղաքս պանդխտող* Լճեցի *մեծ*․ *աղգային*… 20*էն աւելի ան-ձինք գումելի նպատակաւ* Ընկերութիւն *կազ-մել են իրենց հայրենեաց* եկեղեցւոյ եւ դպրոցին բարեկարգութեան ու յառաջադի-մութեան համար, *սկսեր են հանգանակու-թեան*… *Պոլսոյ մէջ անշարժ կալուած մը առնել յիշեալ նպատակին յատկացնելու ու համար*»։

*Ընկերութեան անունը չի յիշուիր*։

### 2․ ԱԶԳԱՆԱԶԵԱՆ ԹԱՏՐՈՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879?)

*Կը յիշուի* Մասիսի *քով* 1881 *Ապրիլ* 22*ին* (Մասիս, 1881, *թ*․ 2889)։ *Նպատակն է* «Գիւղին ազգային վարժարանին նիւթապէս նպաստել» (*Անդ*)։

1908—10*ին վերակազմուած է Ընկերու-թիւնս*․ Պոլսոյ *մէջ* 1912*ին ժողովներ կը գու-մարէն* (Ժամանակ, *կ*․ *պ*․ 1912, *թ*․ 1217)։

## ՏՐԱՊԻԶՈՆ (ՆԱՀԱՆԳԸ)

### 1․ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ՎԵՐԾԱՆՈՒԹԵԱՆ ԹԱՆԳԱՐԱՆԻ (1825)

Յովհաննէս Քհնյ․ Կիւրեղեան, *Տրապի-զոնի փոքրիկ դպրոցին վարժապետը, ժԹ*․

դարու առաջին քառորդին գաղափարը կը յղանայ մշակութային Ընկերութիւն մը հիմնելու, նպատակ ունենալով «Իւրաքանչիւր անդամոց Ընկերութեան վճարել ամ ըստ ամէ դահեկանս երեք եւ այնու գումարաւ կանգնել Թանգարան Վերծանութեան եւ միանգամայն հոգալ զգրեանս եւ զայլ կարեւոր պէտս աղքատին մանկանց դպրոցին» (Աւետիք, Պէյրութ 1935, էջ 174) :

Ինչպէս կը տեսնուի՝ Ընկերութեան առաջին նպատակն է Վերծանութեան Թանգարան, այսինքն՝ Գրադարան-Ընթերցարան մը ունենալ. երկրորդ՝ աղքատ աշակերտներու դպրոցական պիտոյքները հոգալ : — Ընկերութեան հիմնումի թուականը կը թուի ըլլալ 1825 Փետր. 5 :

Ընկերութիւնը կարճ ժամանակէն բաւական անդամ կ'ունենայ : Հ. Գէորգ Վարդապետ, որ այդ ատեն Տրապիզոնի մէջ կը գործէր՝ Տէր Յովհաննէսին եւ Ընկերութեան միւս անդամներուն կ'առաջարկէ 1825 Փետր. 22ին որ Ընկերութիւնը վերածուի Ս. Կուսին Անարատ Յղութեան Եղբայրութեան : Բոլորն ալ կը հաւանին, որով Հ. Գէորգ տասը Յօդուածէ բաղկացած Կանոնագիր մը կը յօրինէ, որուն մէջ կը շեշտէ որ անդամները դարձեալ տարեկան 3 դահեկանի տուրքը պիտի վճարեն Վերծանութեան Թանգարանին համար : Այդ կանոնագիրը կը ղրկէ Հ. Գէորգ տեղական Եպիսկոպոսին, որպէս զի հաստատէ Եղբայրութիւնը եւ կանոնները :

1825 *Ապրիլ* 1*ին կը հաանի կանոններու վաւերացումը եւ Տրապիզոնի մէջ գոյութիւն կ'առնէ* «Անարատ Յղութեան Եղբայրութիւն» *մը* (Աւետիք, *անդ*) ։

*Հին ժամանակագրութիւն մը* 1828 *Փետր*․ 23*ին կը հաղորդէ որ* Անարատ Յղութեան Եղբայրները Գրադարան *մը չինեցին եւ գրքերը հոն զետեղեցին* (Աւետիք, 1936, *էջ* 27) ։

*Ընկերութիւնս Հայ Կաթողիկէ հաստատութիւն մըն է* ։

2․ Ս․ ՓՐԿՉԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1847)

*Հիմնուած է* 1847*ի վերջերը՝ յորդորներով Տրապիզոնի Առաջնորդ* Կարապետ Ծ․ Վ․ի ։ *Ընկերութեանս* նպատակն *է*․ «Բարեկարգել եւ զարգացնել իրենց դպրատունը» (Հայաստան, *Կ․ Պոլիս* 1848, *Թ*․ 81 ։ — Արշալոյս Արարատեան, *Զմիւռնիա* 1848, *Թ*․ 303) ։ *Ընկերութեան գործօն անդամներն են*․ Մագլըմ Պոյանեան, Առաքել Չաքմաքնեան եւ Սարգիս Գարակէօզեան ։ *Պոլսոյ մէջ Ընկերութեան ներկայացուցիչն է* Գէորգ Կիւրճեան (Հայաստան, *անդ*) ։

*Դպրոցին միայուն եկամուտ ապահովելու համար Ընկերութիւնը կը ձեռնարկէ* երկու քարաշէն խանութներու շինութեան (Հայաստան, *անդ*՝ *Թ*․ 82) ։ Պօղոս Գազաննեան *կը նպաստէ Ընկերութեան եւ կ'ընտրուի* պատուոյ նախագահ (*Անդ*) ։

### 3· Ս· ԳԱՅԻԱՆԵԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1852)

Կազմուած է 1852ին՝ նպատակ ունենալով հետեւեալը· «Նպաստել ազգքանց դաստիարակութեան եւ հաստատել «Գայիանեան» վարժարան մը» (Արեւելք, Կ· Պ· 1898, Թիւ 3854) ։

Արեւելեան պատերազմի (1853—1855) պատճառաւ Ընկերութիւնը չի կրնար շարունակել իր գործունէութիւնը եւ մինչեւ 1856 անգործ կը մնայ ։ 1856 Յունուար 1ին կը վերակազմուի Աբէլ Վ· Մխիթարեանի քաջալերանքով, որուն Տրապիզոն գալէն ի վեր, կը գրէ թղթակից մը, «ուսումնասիրութեան սատիկ եռանդ մը արծարծեցաւ ամենուս սիրտը» (Մասիս, Կ· Պ· 1856, Թ· 224) ։

Ընկերութեան վերակազմութեան առթիւ կը գրեն Տրապիզոնէն· «Մինչեւ այս տարի թէ՛ այր եւ թէ կին 500 հոգի անդամ գրուեր էին Ընկերութեան, որոնք Նոր տարրէն իրենց շաբաթական տուրքերը սկսան տալ· կանանց ջերմեռանդութենէն ու նորէնոր ընկերագրուելու եռանդէն ստիպուեր էինք մենք եկեղեցիներուն ամբիոններէն եւ իշխանք առտնին եւ արտաքս՝ քարոզել եւ քաջալերութեան անձրեւ տեղալու ժողովրդեան այս պատարեր սիրտերուն վրայ, որոնք լսելով թէ աղջկանց դպրատունը պիտի բացվի, չգրվող Տիկնայք անգամ գրվելու փութացան եւ առաջուց գրվողներն ալ իրենց անվճար մնացած չարաթականները տալու սկսան... Աղջկանց կրթութեան անկշռելի օգուտը լաւ

հասկցած ըլլալով, շատ բարեպաշտ մայրեր իրենց բերնին հացը կտրելու յօժարութիւն ունին՝ իրենց զաւակացը մշտնջենաւոր հաց մը պատրաստելու համար... շատ տուներ բոլոր ընտանիքով գրված են...» (Մասիս, 1856, Օգոստոս 1):

*Տրապիզոնի Հայութեան այս միահամուռ եռանդէն ու զոհաբերութենէն քաջալերուած՝ տեղւոյն մեծերը* 1856 *Յունիս* 1*ին կը բանան* Գայիանեան աղջկանց Վարժարանը՝ *պաշտպանութեամբ* «Ս. Գայիանեանց Ընկերութեան»: *Անանուն թղթակիցը, որ հաւանօրէն եկեղեցական մ'է՝ կը շարունակէ վերի թըղթակցութեան մէջ տեղեկագրել.* «*Ասանկ ջերմեռանդ սիրոյ եւ ազնիւ նախանձաւորութեան մը գեղեցիկ արդիւնքներէն քաջալերուած, Աստուծոյ ամենազօրին շնորհիւը...* աղջկանց դպրատունը Յունիս 1ին բացինք *ազգային Հոգաբարձուաց եւ իշխան Աղայից խոհեմ կառավարութեամբը եւ անընդմիջական գործակցութեամբ նորընտիր Հոգաբարձուաց* Աղանեան Աղայի Յովհաննէսեան *եւ ազգասէր* Մելքոն Աղայի Թիւրքեան... Գայիանեանց Վարժարանը *այս օրուան օրս* 72 *աղջկունք աշակերտ ունի...* ուսման եւ ասեղնագործութեան դասատուները մեր ազգէն բարեպաշտօն կանայք են, *իսկ գրութեան եւ կրօնական կրթութեան վարժապետ քաղաքիս Զարխափան Եկեղեցւոյ խոհեմափայլ Տէր Համբարձում քահանայն*» (Մասիս, *անդ՝ Թ*. 236): — *Հայաստանի եւ Գաւառներու մէջ*

*բացուած* առաջին աղջկանց Վարժարանն *է ասիկա, եթէ չենք սխալիր։ Չի յիշուիր թէ Ընկերութիւնը ունեցա՞ծ է իր* Կանոնագիրը։

4· ՀԱՅԿԱԶԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1852—53)

*Հիմնուած է իրր* 1852—53*ին*։ 1855*ի վերջերը* Աբէլ Վ· Մխիթարեանի *«ազգու յորդորանքներովը», «թմրութենէ արթնցնելով» Ընկերութիւնը* կը վերակազմուի, *Վարդապետը «գեղեցիկ եւ իմաստուն կանոններ» կը հաստատէ։ Ընկերութիւնը, իբր երախտագիտական փոխարժէք՝ իր ծախքով կը տպագրէ Աբէլ Վ·ի գրած* «Անիի ճամբորդութիւնը» (Մասիս, 1856, *Թ*· 206)։ — *Ընկերութեան մասին ուրիշ ծանօթութիւն կը պակսի*։

5· Ս· ՍՏԵՓԱՆՈՍԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1854)

*Հիմնած են Տրապիզոնի եկեղեցիներու* դպիրները։ *Ունի* շաբաթական բաժնեվճար *մը եւ* շաբաթական գանձանակ *մը՝ եկեղեցիներուն մէջ*։ Նպատակն *է՝ «Վարժարանի տղայոց երաժշտութիւն սորվեցնելու համար... ուսուցիչ մը վարձել»* (Աբէլ վարդ· Մխիթարեան, *Վէպ դաղթականութեան Հայոց Տրապիզոնու*· *Կ*· *Պ*· 1857, *էջ* 59—60)։

6· ՍԻՒՆԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1856)

*Կազմուած է* 1856*ի սկիզբները «քանի մը ուսումնասէր ազգայիններէն եւ անձնական*

օգտի նպատակաւ»: Ընկերութիւնը իր շահին 5%ը Վարժարանի օգտին կը յատկացնէ (Արփէլ Վ., անդ, էջ 58—59): Ժամանակակից հայ Մամուլի մէջ հանդիպած չենք Ընկերութեան անուան: Զենք գիտեր թէ ունեցա՞ծ է կանոնագիր եւ ո՛րքան կեանք ունեցած է:

### 7. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1856)

Հիմնուած է «Գիրք հրատարակելու եւ ուսման սէրը տարածելու նպատակաւ» (Արեւելք, Կ. Պ. 1898, Թ. 3854): — Ընկերութիւնը «Վերծանութեան սենեակ» (Ընթերցարան) մը կը բանայ, ուր ունի ամէն տեսակ գրքեր ու թերթեր: 1856 Նոյեմբերին Ընկերութեան անդամներու թիւը հասած էր 90ի: Անդամները 10 փարա, իսկ ոչ–անդամները 20 փարա վճարելով կը կարդան գիրք կամ թերթ (Մասիս, Կ. Պ. 1856, Թ. 253:

### 8. ԼՈՒՍԻՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

Խ. Ա. Էլմասեան (աշխոյժ երիտասարդ մը, որ շատ կարեւոր թղթակցութիւններ ըրած է Տրապիզոնէն Պոլսոյ հայ թերթերուն) կը տեղեկագրէ 1863 Յունուար 30 թուականով. «Թատրոնին մեծ օգուտները տեսնելով՝ հոս ալ քանի մը աշխոյժ պատանիներ մասնաւոր Ընկերութիւն մը կազմեցին ու թատեր մը ամէն պէտք եղած գարդերը պատրաստելով՝ թատրոն մը բացին, ուր Նոյեմբեր 12էն ի վեր ամէն գիշեր, բաց

*ի Հնդշարթի օրերէ*, իրենց խաղերը կը ներկայացնեն...» (Մասիս, 1863, *թ*. 575):

*Ինչպէս կը տեսնուի՝ Ընկերութիւնը կազմուած է 1862ի* աշունէն առաջ *եւ արդէն նոյն տարւոյ Նոյեմբերին կրնան ներկայացում տալ: Ի՞նչ էր սակայն Ընկերութեան* անունը, *զոր էլմասեան մոռցած է տալ: — Տրապիզոնէն գրուած նամակէ մը կ'իմանայ* Մասիսի *խմբագիրը թէ Տրապիզոնի մէջ* 1862*ին բացուած թատրոնը* «Լուսինեան թատրոն» *կը կոչուի եւ* 1863*ին ալ ներկայացումներ կու տայ, ուր* 150—250 *հոգի ներկայ կ'ըլլան հայ եւ օտար* (Մասիս, 1863 *թ*. 617): *Տարակոյս չի մնար թէ Ընկերութեան անունն է* «Լուսինեան Ընկերութիւն»:

1867*ին* դադրած է *Ընկերութիւնը, թէեւ Տրապիզոնի մէջ կը շարունակուին ներկայացումները* (Ժամանակ, Կ. Պ. 1867, *էջ* 53):

## 9. ԼՈՒՍԻՆԵԱՆ ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863)

*Պոլսոյ* Մեղու (1863, *էջ* 327) *կը գրէ*. «*Տրապիզոնի մէջ* Լուսինեան *անունով* Առեւտրական Ընկերութիւն *մը հաստատուեր է* 1863 Յունուարի սկիզբէն, *որ* 100 *բաժինէ պիտի բաղկանայ, իւրաքանչիւր բաժնի համար* շաբաթը կէս մանէթ տուրքով»: *Ընկերութիւնը ունի իր Կանոնադրութիւնը, տպուած Պոլիս* (*Անդ*), *զոր չենք տեսած*:

10· ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

*Կազմուած է* 1864*ին* : *Ահա իր Վարչութիւնը ·*

*Ստեփան Թիրիաքեան* *Ատենապետ*
*Յովսէփ Ֆէթվաճեան*
*Վարդան Խաչեան*
*Խաչատուր Էլմասեան* (Վարագայի Հաւատիս, *Կ* · *Պ* · 1864, *Թ* · 115) : *Իր մասին ուրիշ տեղեկութիւն գտած չենք* :

11· ԽՈՐԷՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

*Հիմնուած է* 1864*ի վերջերը եւ բացած* Ընթերցարան *մը*, *ուր պիտի գտնուին* բոլոր հայերէն թերթերն ու պարբերականները (Ժամանակ, *Կ* · *Պ* · 1865, *էջ* 6) : *Ընկերութիւնը* 1865*ի սկիզբը ունէր* 40—50 *անդամ*, *իսկ* 1865 *Յուլիսին* թոյլցեր են արդէն *եւ քաջալերանքի կարօտ են* (*Անդ*, *էջ* 118) : 1867*ին Ընկերութեան Ընթերցարանը կ'այցելէ* Մկրտիչ Խրիմեան Սրբազան, *Նորընտիր Պատրիարքը* : *Ընթերցարանը կը գտնուէր Առաջնորդարանի ներքին յարկին մէջ* (Մանզումէի Էֆքեար, Կ · Պ · 1869, Թ · 1086) :

12· ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864—66)

*Հիմնումի տարին չի յիշուիր* : *Հիմնադիրներն են* Լուսաւորչեան Վարժարանի *աշակերտները*, *որոնք* 1867*ին ունին* Թանգարան (*Գրադարան*) *մը* · *իրենց կը նուիրէ մեծ վաճառական* Գ · Նատիրեան *մէկ* լուինի (*ոսկի*) *եւ* *Ս* · *Վ* · *Թէոդորեանի գիրքը*

(Փունջ, Կ. Պ. 1867, Թ. 171)։ — 1881*ին* վերակազմուած՝ *կը շարունակէ գործել*։ *Վարժարանը կ՚օժտէ բնագիտական գործիքներով, աշխարհացոյցներով, դասագրքերով ու թերթերով* (Հայրենիք, Կ. Պ. 1881, *թիւ* 888)։ — *Իր* նպատակն *է* հոգալ դպրոցական պիտոյքներ։ *Ունէր* 50 *անդամ* (*Անդ*)։

13. ԲԱՐԵԿՐԹԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Հիմնած են Տրապիզոնի* Հայ Կաթողիկէները։ *Ունին գանազան թերթեր՝ ընթերցման համար* (Օրագիր, Կ. Պ. 1871, Թ. 406)։ — 1871*ին* 60 *անդամ ունէր եւ սեպհական* Ընթերցարան *մը՝ գանազան գրքերով ու թերթերով* (Բուզնամէի Մէնմ. Հավատիս, Կ. Պ. 1871, Թ. 640)։ *Ծանօթ չէ թէ ո՛րքան տեւած է*։ *Ունեցա՞ծ է* Կանոնագիր *մը*։

14. ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

1872 *Յունիս* 1*ին կազմուած է*։ *Նպատակն է*. Լուսաւորչեան վարժարանի նիւթականը ապահովելու համար անշարժ կալուածներ կառուցանել։ *Անդամավճարն է* շաբաթական 40 փարա։ 1872*ին բաժանորդները թիւը հասած էր* 700*ի*։ *Ընկերութեան* 500 *Ֆրանկ կը նուիրէ ռուսխարնակ* Պ. Սաքարով *եւ* 25 *մանէթ* Ներսէս վարժապետեան Սրբազան (Փող, Կ. Պ. 1872, Թ. 195)։ 1874*ի սկիզբը*, գերեզմանատան կողմը կը շինէ 8 խանութ (Մասիս, Կ. Պ. 1874, Թ. 1503)։

### 15. ԳԱՐԵԳԻՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1876)

Հայ Կաթողիկէ *Ընկերութիւն մըն է*: *Հիմնուած է* 1876 *Յունուար* 1*ին*: *Ունի իր* կանոնագիրը, *հրատարակուած* 1876*ին*, *որ կը բաղկանայ* 30 *Յօդուածներէ* (*մեր Մատենադարանի օրինակը* պակասաւոր *է*): *Ահա Ընկերութեան* նպատակը. «Գարեգինեան Ընկերութեան *նպատակն է դրամ շահեցնել եւ բազմապատկել՝ առանց դրամագլխոյն դըպչելու շահուն չորս մասին մէկ մասովը ընկերաց բարւոյն համար բարոյական, ընթերցասիրական եւ նիւթական վերաբերեալ օգտակար միջոցներ հայթայթել* (*Կանոն Ա.*) *բաժանորդագինն է՝ շաբթէ շաբաթ* մէկ դահեկան մէնիտիէ *վճարել* (*Կանոն Դ.*). *Ընկերութեան տարեդարձի օրն է* Վարդանանց Տօնը, *երբ տեղի կ'ունենայ* Ձայնաւոր պատարագ մը *եւ յետոյ* հանդէս մը (*Կանոն Ը.*):

### 16. ԱՐԱՐԱՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1876—77)

*Կը յիշուի* 1877 *Սեպտ.ի սկիզբը*: *Հիմնուած են* Կաթողիկէ եւ Լուսաւորչական Հայերը: *Բացած են* սրճարան *մը*, *ուր բերել կու տան հայերէն*, *գաղղիերէն*, *տաճկերէն լրագիրներ* (Հայրենիք 1877, *Թ.* 369): *Անդամոյն ծանօթութիւն կը պակսի*:

### 17. ՎԱՐԱԶԴԱՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

*Կը յիշուի* 1878 *Դեկտեմբերին* լոկ անունով (Լոյս, *Կ. Պ.* 1878, *Թ.* 76):

18· ԽՆԱՅՈՂԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

*Ճաճակցական Ընկերութիւն մ'է : Ունե-ցած 45 անդամ (Անդ) :*

19· ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ «ՊԱՏԱՆԻՔ ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ» (1879)

Գարեգին Վ. Սրուանձտեանց *Տրապիզոն կը հասնի* 1879 *Մայիս 4ին. Մայիս 6ին կը պատարագէ եւ կը քարոզէ. գանազան առիթներով կը խօսի եւ կը հրահրէ տեղւոյն Հայութիւնը՝ մշակութային նոր կեանքի ու վերելքի յորդորելով : «Տրապիզոնի թմբրեալ ժողովուրդը կարծես անմիջապէս սթափեալ՝ ամենուրեք նորա բանից գործադրութեան վերայ կը խորհէին չուկաներու, հրապարակներու, կրպակներու մէջ...», կը գրէ թղթակից մը Տրապիզոնէն՝ Մայիս* 10*ին : Ահա այդ ճառերու եւ խրախուսանքի ար-դիւնքներէն մին կ'ըլլայ որ Տրապիզոնի* պատանիներ 1879 *Մայիս* 6—8*ին կազմեն Պոլսոյ* «Արեւելեան–Դպրոցասիրաց Ընկերութեան» *մէկ ճիւղը՝ կոչելով զայն «Ընկերութիւն* «Պատանիք Դպրոցասիրաց», *որուն անդամ-ներու թիւը Մայիս* 10*ին հասած էր* 45*ի* (Փունջ, *Կ. Պ.* 1879, *Թ.* 1375) : *Նպատակն էր՝* «լրագիր եւ գրքեր բերելով օգնել ըն-թերցասիրութեան ծառայումին» (*Հ*այրե-նիք, 1881, Թ. 888) :

*Ընկերութիւնը* 1881*ին ունէր* Ընթերցա-սրահ *մը եւ* 3 *ամսաթերթ*, 1 *օրաթերթ եւ* 100 *գիրք : Հասոյթին* 7% *կը գործածէր իր*

*նպատակին*, *իսկ* 25%*ը* *չահու կու տար*։ *Կ'ուզէր ընդարձակ տեղ մը վարձել իբր* Ընթերցարան։ *Ընթերցարանի մուտքն էր* 10 *փարա* (Հայրենիք, *անդ*)։

20· ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Հիմնուած է* 1879*ի գարնան եւ* 1879 *Մայիս* 12 *Թուակիր Թղթակցութիւն մը հիմնուած ըլլալը հաղորդելէ վերջ՝ կը խոստանայ յաջորդիւ տեղեկութիւն տալ մանրամասնօրէն* (Մասիս 1879, *Թ*. 2333)։ *Բայց յաջորդ Թիւերու մէջ չենք գտներ որեւէ տեղեկատուութիւն*։

21· ՀԱՅ ՈՐՍՈՐԴԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879—80)

*Կը յիշուի* 1880 *Հոկտ*. 18*ին*։ *Հիմնադիրներն են Տրապիզոնի* Ընկերական Համազգային Վարժարանի *ուսուցիչները*՝ Թխիկեան, Մանուկ Դանիէլեան, Յ. Միքայէլեան։ *Նիւթապէս օգնած են* «Դպրոցասիրաց Արեւելեան»*ի եւ* «Միացեալ Ընկերութիւնք Հայոց»*ի* (Փունջ 1880, *Թ*. 1517)։

22· ՍԱՆՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

1881 *Նոյեմբերին* «դեռակազմ» *է*, *գուցէ կազմուած* 1880*ի սկիզբները*։ *Հիմնադիրներն են* Լուսաւորչեան երկսեռ վարժարանի Սանուհիները։ *Իրենց նպատակը նոյն է* «Սանուց Ընկերութեան» *հետ*, «*միայն թէ սանք բնական գիտութեանց պէտքերու փոխան*, պիտի ունենան ձեռագործի նիւթեր, *քննու-*

*թեան տեղն* յառաջադէմ աշակերտուհեաց իբր մրցանակ ոսկեայ կամ արծաթեայ խաչանիշներ պիտի պարգեւէ… *Օ՜Հ, Աստուած օրհնէ ձեր գործի սկիզբն, ո՛վ սիրուն աղջիկներ ապագայ օրհնեալ մայրեր»* (Հայրենիք 1881, *թ.* 888):

23. ԵՐԿՐԱԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880°)

*Այս եւ յաջորդ Ընկերութեան յիշատակութիւնը գտած ենք*, 1960*ին*, Իսթանպուլի Հայ Պատրիարքարանի (Գումգափու) Դիւանին մէջ գտնուած հին տետրակի մը էջերուն մէջ, *ուր* հիմնումի թուական նշանակուած չէ: *Հիմնումը կրնայ* 1880*ին ըլլալ*: Նպատակն *է*՝ Հայաստանի մէջ մշակութիւնը տարածել: *Հող գնած է* Մշոյ մէջ: *Ունէր* 12 *անդամ*:

24. ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880?)

*Հիմնադիրները Տրապիզոնի* «Համազգային Վարժարանի»*ի Սաներն են*: Նպատակն *եղած է* քարոյապէս նպաստել աղքատ ուսանողաց: — 1899*ի Բարեկենդանին Տրապիզոնի «խումբ մը երիտասարդներ» թատերական ներկայացում կու տան ի նպաստ «Դպրոցական* Սանուց Ընկերութեան» (Արեւելք, *կ. պ.* 1899, *թ.* 3858 *եւ* 3965): *Հաւանօրէն «Համազգային»ի «Սանուց»ն է սփկա*:

## 25· ՀԱՅՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

*Նպատակն է «Գոյացած հասոյթէն մասամբ օգնել Կ. Պոլսոյ* «Ազգանուէր Հայուհեաց Ընկերութեան» *եւ* տեղւոյն իգական վարժարանի մէջ ձեռագործի վարժուհի մը պահելով՝ աղջկանց վարժարանի ձեռագործաց զարգացման խնամ տանիլ։ *Իրենց նիստերն ու արձանագրութիւնք կանոնաւոր են, որոց կը նախագահէ Նորին Սրբազնութիւնը (Մատթէոս Նալբանդեանց Սրբազան) եւ Տէր Մեսրոպ քահանայ է քարտուղարը։ Թո՛ղ ներեն ինձ հոս հռչակել իրենց անուանքն ի բարի օրինակ այլոց·*

*Համեստափայլ Տիկնայք·*

| | |
|---|---|
| *Զմրիւթ Թ. Գաւուզճեան* | *Ատենապետ* |
| *Մ. Իսկուհի Ս. Էլմասեան* | *Ատենադպիր* |
| *Մ. Իսկուհի Ս. Աղաճանեան* | *Գանձապետ* |
| *Հեղինէ Մ. Տ. Համբարձումեան* | |
| *Թագուհի Ռ. Տ. Համբարձումեան* | |
| *Մարիամ Գ. Գասպարեան* | |
| *Ծաղկաթ Մ. Միրիճանեան* | |
| *Համասփիւռ Պ. Կոթպաչեան* | |
| *Իսկուհի Մ. Տէտէեան* | *Հաւաքիչ* |

*Վերջերս 25 մեճիտիյէի փոքրիկ գումար մը դրկեցին Կ. Պ.* Հայուհեաց Ընկերութեան։ *Մտադիր են աղջկանց ձեռագործաց մէկ վաճառահանութիւնը կատարել, որք*

ընդ. ամէնն 100 կտորէն աւելի են... Ընկերութեան դրամագլուխը իրր 70 լիրայի յանգած է. ունի 300ի չափ բաժանորդ, մէն մի բաժին ամսական մէկ ղրուշ է» (Փունջ, Կ. Պ. 1882, Թ. 1676)։

Մասիս (1881, Թ. 2796) մէջ թղթակից մը Տրապիզոնէն 1881 Յունուար 5 թուականով կ՚իմացնէ. «Վերջերս քաղաքիս մէջ պատահած նշանակութեան արժանի դէպքն է «Հայուհեաց Ընկերութեան» մը կազմութիւնը՝ յորդորանօք Ս. Առաջնորդին»։ — Անտարակոյս 1880ի վերջերը տեղի ունեցած է հիմնումը։ 1882ին Ընկերութիւնը 500 անդամ ունէր. ամսավճարն էր 40 փարա։ Ընկերութիւնը ազգային վարժարանի մէջ ձեռագործի համար վարժուհի մը վարձած էր (Հայրենիք, Կ. Պ. 1882, Թ. 978)։ — 1884ին ալ կը շարունակէր Ընկերութիւնը գործել ի նպաստ տեղւոյն աղջկանց վարժարանին (Տե՛ս Մասիս, Կ. Պ. 1884, Թ. 3623)։ Ընկերութիւնը կը դադրի 1885—86ին (Տե՛ս Հայրենիք 1893, Թ. 589)։

### 26. Ս. ՅՈՎՍԷՓԱՅ ԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ (...1881)

Պոլսոյ «Ս. Յովսէփայ Եղբայրութիւն»ը հիմնուած է 1742ին (Տե՛ս Պատմութիւն Հայ Մշակութային Ընկերութիւններու. Հատոր Ա. Վիեննա 1957, էջ 16—19)։ Այդ Եղբայրութեան մէկ ճիւղը Տրապիզոնի մէջ ալ հիմնուած է, բայց հիմնումի թուականը ան-

ծանօթ է մեզ ։ 1881ին եղբայրութիւնը դպրոց մը կը բանայ Տրապիզոնի մէջ (Մասիս, Կ. Պ. 1881, Թ. 3074) ։

## 27. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂ. ՀԱՅՈՑ (1881)

Տրապիզոնի Կաթողիկէ Հայերը 1881ին կը հիմնեն «Աղքատախնամ Ընկերութիւն Կաթողիկէ Հայոց»ը եւ նոյն տարին կը յաջողին գնել տուն մը՝ իբրեւ հասութաբեր կալուած ։ 1893ին Ընկերութիւնը 200 լիրա դրամագլուխ ունի, որով երկրորդ տուն մ'ալ կը գնէ «վասն Աղքատախնամ Ընկերութեան, որպէս զի դիւրաւ հոգացուին ապագային խեղճ աղքատաց պէտքերն եւ Աղքատանոցի մը սկզբնաւորութիւնը ըլլայ ։ Իր այժմեան Գանձապետն Կոմիտաս Հէքիմեան է» (Հայրենիք 1893, Թ. 587) ։ — 1896ին Փոխ-Ատենապետ եւ Գանձապետ է Կոմիտաս Հէքիմեան ։ Ընկերութիւնը կրցած է սփոփել շատ մը տեղացի եւ անցորդ Կաթողիկէ Հայոց աղքատաց ցաւերն, սրբել շատ մը ընտանեաց դառն արտասուքը եւ մխիթարել զիրենք...» (Դիւան Վիենն. Մխիթ. Մատենադարանի, 1896 Ապրիլ 13) ։ Ընկերութիւնը դիմում ընելով մեր Միաբանութեան՝ կը խնդրէ նպաստ մը ։ Գեր. Հ. Արսէն Արքեպ. Այտընեան Ընդհ. Աբբահայրը 500 ֆլորին կը դրկէ (Դիւ. Վիենն. Մխիթ. Մատեն. 1896 Մայիս 28) ։

### 28. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1882)

Հիմնուած է 1882ի սկիզբը՝ Տրապիզոնի Հայ Կաթողիկէ երիտասարդներէ։ 1882 Փետր. 1ին ունէր 60—70 անդամ եւ ընթերցարան մը (Մասիս 1882, թ. 3111)։ Շուտով կը դառնայ համազգային ընկերութիւն մը եւ տեղի կ՚ունենան ճառախօսութիւններ գիտական նիւթերու շուրջ։ Ընկերութիւնը ունի բազմաթիւ գրքեր ու թերթեր (Մասիս 1882, թ. 3149)։

### 29. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1885—86)

1886 Հոկտ. 5 թուականը կրող թղթակցութիւն մը Տրապիզոնէն կ՚իմացնէ. «Քաղաքիս գիւղական վարժարանները խնամելու եւ յարմար դատած գիւղերու մէջ վարժարաններ բանալու նպատակաւ ընկերութիւն մը կազմուած է ժամանակէ մը ի վեր եւ Գեր. Առաջնորդի նախագահութեան տակ հետեւեալ անձինք Գործադիր Ժողովոյ անդամ ընտրուած են.

Յակոբ Այնաւորեան
Միհրան Քիւրքճեան
Գէորգ Արապեան
Յակոբ Մեղաւորեան
Օննիկ Մախոխեան
Յովսէփ Միքայէլեան
Գարուն Զիլինկիրեան (Արեւելք, Կ. Պ. 1886, թ. 832)։

*Ի՞նչ էր սակայն* անունը *Ընկերութեան*: *Չէ՛ տուած անունը ուրիշ թղթակից մ'ալ, որ ցաւով կ'իմացնէ թէ* «անյաջող մնաց քանի մը էֆէնտիներու ընդդիմութեանց շնորհիւ» (Արեւելք 1887, *Թ*. 1159):

30. ՊԱՏԱՆԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1886)

*Կը յիշուի* 1886 *Դեկտ*. 20*ին* (Փունջ, *Կ*. *Պ*. 1886, *Թ*. 2025), *առանց մանրամասնութեան*:

31. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1886)

*Կազմուած է* 1886 *Յուլիսին*: «Ե. Պ.» *ստորագրող թղթակից մը Տրապիզոնէն կը գրէ* 1886 *Նոյ*. 16*ին*. «Չորս ամիս առաջ *քաղաքիս մէջ մի քանի կրթասէր անձինք միանալով* Ընկերութիւն մը կազմած են *եւ քաղաքիս* «Մէյտանը Տարգի» *ըսուած Հրապարակի վրայ* Ընթերցարան *մը բացած են* ժողովրդեան ամէն խաւերու մէջ ընթերցասիրութիւնը տարածելու համար: *Այն Ընթերցարանին մէջ կը գտնուին Տաճկաստանի եւ Ռուսաստանի բոլոր ազգային լրագիրներն ու Հանդէսները... Անդամոց թիւը մօտ* 60*ի կը հասնի*... Պ. Միհրան Քիւրքճեան *մի քանի տեսակ հայերէն եւ տաճկերէն թերթեր կը նուիրէ մշտնջենաւոր*» (Արեւելք 1886, *Թ*. 868):

*Գլխաւոր հիմնադիրներն են՝* Ա. Ֆելիզեան, Նշան Խոտշեան, Կարապետ Ինճեցեան:

*Ընկերութիւնը կազմողներն են* «Պատանեաց Ընկերութեան» *քանի մը անդամները եւ ուրիշ «ուսեալ երիտասարդաց ոմանք»* (Փունջ, 1886, *Թ.* 2025):

*Ընկերութեան* անունը *կրնայ եղած ըլլալ* «Ընթերցասիրաց», *բայց չէ յիշուած. Ընթերցարանի բացման նպաստած է* Գարեգին Վ. Սրուանձտեանց *եւ նուիրած* Մշակ *եւ* Մեղու *թերթերը* (Արեւելք 1887, *Թ.* 921):

## 32. ՀԱՅՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1888)

*Ինչպէս վերը չեշտեցինք՝* 1880*ին հիմնուած «Հայուհեաց Ընկերութիւն»ը* 1885—86*ին* դադրած էր *գոյութիւն ունենալէ*: 1888*ին Տրապիզոնի հայ Տիկինները ու Օրիորդները պէտք կը զգան հիմնելու նոր* «Հայուհեաց» *մը: Ահա այս մասին* 1893 *Մարտ* 6 *թուականով թղթակցութիւն մը, գրուած Տրապիզոնէն՝* «Հայ կանանց դերը Տրապիզոնի մէջ» վերնագրի տակ. «1888*ին* էր որ մէկ քանի գաղափարակից կիներ եւ օրիորդներ ձեռք ձեռքի տուած՝ կը կազմեն Տրապիզոնի Հայուհեաց Ընկերութիւնը, *որու անդամներուն թիւը հասած է հիմա* 120*ի... Հայուհեաց Ընկերութեան նպատակն է.* 1. *Օգնել քաղաքի երկսեռ Ուսումնարանի* աղքատ սաներուն, *մատակարարելով անոնց տարին երկու անգամ (Ծնունդին եւ Զատկին) մէկ մէկ ձեռք զգեստ.* 2. *Օգնել* գիւղական ուսումնարաններու աղքատ սաներուն. 3. Բանալ ուսումնարաններ (*դպրոց*)

աղքատ գիւղերու մէջ. *Նպաստել* Տրապիզոնի վինակի ուսումնարաններուն... *Փետր. ամսու* 21*ին Ընկերութիւնը տօնեց* Օրիորդաց Ուսումնարանի *սրահին մէջ իր* հնգամեայ *գործունէութիւնը... Ընկերութիւնը կը պատրաստէ վիճակահանութիւն այս ամսուն* 12*ին համար*» (Հայրենիք, Կ. Պ. 1893, *Թիւ* 422) : *Թղթակիցը կ՚աւելցնէ որ* 1893ին ուրիշ Ընկերութիւն գոյութիւն չունի Տրապիզոնի մէջ :

*Ընկերութիւնս կը կոչուի մերթ նաեւ* «Հայուհեաց Աղքատախնամ Ընկերութիւն» (Հայրենիք, Կ. Պ. 1892, *Թ.* 290) : *Նախաձեռնող – Հիմնադիրներն են Տրապիզոնի* Աղջկանց վարժարանի ուսուցչուհիները (Հայրենիք 1893, *Թ.* 589) : *Ընկերութիւնը ունեցած է իր* կանոնագիրը (Հայրենիք, *անդ*), *բայց չենք գտներ զայն : Տպուա՞ծ էր :*

1899*ին կը շարունակէ Ընկերութիւնը իր աշխոյժ գործունէութիւնը՝ մխիթարութիւնը ըլլալով Տրապիզոնի Հայուն այնպիսի ատեն մը, երբ ընկերաբար քովէ քով գալը արգիլուած էր Համիտի այդ շրջանին : Ընկերութիւնը* «հաւաքուելով աղջկանց դպրոցին մէջ՝ *ընթերցումներ կը կատարէ Կիրակի օրերը*» (Արեւելք 1899, *Թ.* 3913) : *Ընկերութիւնը մտադիր է բանալու* արհեստանոց մը *աղջկանց ձեռագործի համար, բայց նիւթական կարողութիւնը թոյլատու չէ* (*Տե՛ս* Արեւելք 1901, *Թ.* 4622) :

1908—1909*ին* կը վերակազմուի *Ընկե–*

*րութիւնը եւ կը ճարէ 300ի չափ անդամավճար· կու տայ ներկայացում եւ իր նիւթական միջոցներով կը բանայ* արհեստանոցը 1911 *Հոկտ· 1ին։ Պոլսէն բերել կու տայ ուսուցչուհի մը եւ աղջիկները կը սկսին սորվիլ* կարուձեւ, ձեռագործ *եւ այլն* (Ազատամարտ, *Կ· Պ·* 1911, *Թ·* 730)։

## 33· ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1893)

*Հիմնուած է 1893ին։ Իր* կնիքը — պղթուականով — *տեսանք* (1960ին) Իսթանպոլի Հայ Պատրիարքարանի Դիւանական նամակներէն մէկուն վրայ։ *Կնիքին թուականը, ընդհանրապէս, Ընկերութեան* հիմնումի տարին *կը ցուցնէ։ Իսկ այդ* նամակին *թուականն էր 1907 Նոյ· 12, գրուած՝* Տրապիզոնէն։ 1907*ին, սակայն, Ընկերութիւնը նոր կոչում — յորջորջում մ'ունի· — կը կոչուի* «Աղքատաց խնամակալութիւն», *յայտնի նշան թէ 1893ի* «Աղքատախնամ Ընկերութիւն»*ը ժամանակի* ընչումին *հետեւանքով (Համիտի շրջան եւ արգելք) փոխուած եղած է* «խնամակալութիւն», *չըսուելու համար* «Ընկերութիւն»։ 1907*ին Ընկերութեան* վարչութիւնը *կը կազմէին·*

| | |
|---|---|
| *Յակոբ Օտապաշեան* | *Ատենապետ* |
| *Միհրդատ Տէմիճեան* | *Ատենադպիր* |
| *Գրիգոր Սիմոնեան* | *Գանձապետ* |
| *Միսաք Թումանեան* | *Անդամ* |
| *Կարապետ Հէքիմեան* | *Անդամ* |

*Պոլսոյ* Հայրենիք (1893, *Թ*. 655, 665) *կը յիշէ Ընկերութիւնս եւ կ'ըսէ որ մաղձայոյզ (կոլերա) հիւանդութեան ճարակած ատեն Ընկերութիւնը մեծապէս օգտակար եղած է հագուստ, թէյ, շաքար, կիտրոն եւ դրամ բաժնելով աղքատներուն* :

34. ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1899)

*Տրապիզոնէն կը գրեն*. «Ֆրէր ժոզէֆի *ազնիւ նախաձեռնութեամբ* տարիուկէսէ ի վեր *քաղաքիս մէջ հաստատուած է* «Բարեգործական Ընկերութիւն» *մը, որուն* նպատակն *է* որբեր պաշտպանել *Տրապիզոնի Ֆրէրներու դպրոցին մէջ... ունի* 200 *անդամ եւ* 7 *որբ կը պահէ*...» (Արեւելք, *Կ*. *Պ*. 1900, *Թ*. 4453, *Հոկտ*.) :

35. ՊԱՏԱՆԵԿԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1907)

«*Համեստ պայմաններու մէջ ծնունդ առած ու գոյութիւնը պահած է* «Պատանեկան Միութիւն» *մը, կը գրէ Կարնոյ* «Յառաջ»*ի* (1909, *Թ*. 49) *Տրապիզոնի թղթակիցը* : *Կը կոչուի նաեւ* «Պատանեաց *Միութիւն*» *եւ կու տայ թատերական ներկայացումներ* (Ազատամարտ, *Կ*. *Պ*. 1910, *Թ*. 214) :

*Կազմուած է* 1907*ին* : 1910*ին կը կազմակերպէ հասարակական եւ առողջապահական դասախօսութիւններ* (Ազատամարտ 1910, *Թ*. 456) :

### 36· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Հիմնուած է* 1908*ի աշնան*: 1909*ին ունի* 200 *անդամ*: *Անդամավճարն է* կէս ոսկի տարին: *Ունեցած է* կանոնագիր (Ազատամարտ 1909, *Թ*. 126: — Յառաջ, *Կարին* 1909, *Թ*. 49): Կը դադրի 1910*ին* (Ազատամարտ, 1910, *Թ*. 457):

### 37· ԱՆԱՆՈՒՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Նպատակն է «Սինէմակրաֆի տեսարաններու ներկայացումներ տալ վերջին նորութիւններով եւ ելեկտրական գործիքներով օժտուած: Կազմուած է* 25 *ոսկի արժողութեամբ բաժնեգիններէ»* (Սուրհանդակ, *Կ*. *Պ*. 1908, *Թ*. 105):

*Ընկերութեան կարեւոր անդամն է* Տօքթ. Խ. Հէքիմեան (*Անդ*):

### 38· ԿՂՄԻՆՏՐԻ ԵՒ ԹՈՒՂԼԱՅԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

*Կազմուած է* 1909 *Ապրիլ–Մայիսին*: *Կը բաղկանայ* 7500 *բաժինէ*, *իւրաքանչիւր բաժինը*՝ 2 *ոսկիէն* (Խարիսխ, *Տրապիզոն* 1909, *Թ*. 14):

### 39· ՀԱՅ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1912)

1912 *Ապրիլին կը գրէ Պոլսոյ* Ազատամարտ: «*Տրապիզոնի մէջ* Հայ Ուսումնասիրաց Միութիւն *մը կազմուած է*, *նպատակ ունենալով* Միջնակարգ Ուսումնարան մը բա–

նալ քաղաքին մէջ, Տրապիզոնի եւ թեմերու Հայ մանուկներուն համար, առանց դաւանանքի խտրութեան» (Ազատամարտ, 1912, Թ. 871)։

Վարչութիւնը կը կազմեն.

Ս. Էլթմէքճեան — Ատենապետ
Սեդրակ Խայեան — Ատենադպիր
Կարապետ Մնացականեան — Գանձապահ
(Անդ)։

## 40. «ՇԱՐԺՈՒՄ» ՄԱՐՄՆԱՄԱՐԶԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1912)

Ղազարեան եւ Ղեւոնդ Սողանճեան կ'իմացնեն 1912 Յուլիսին թէ. «Տրապիզոնի մէջ ասկէ առաջ գոյութիւն ունէր Մարմնամարզական Միութիւն մը, որ վերջերս կազմակերպուած է «Շարժում» անուան տակ» (Մարմնամարզ, Կ. Պ. 1912, էջ 238)։ Ի՞նչ էր նախկին անունը։

## 41. «ԱՇՏԻՇԱՏ» ԿԱՆԱՆՑ ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1914)

Հիմնուած է 1914ի Յունուարին՝ նախաձեռնութեամբ քանի մը Օրիորդներու։ Նպատակն է. «Զարկ տալ իգական սեռի ինքնազարգացման ու կրթութեան» (Յառաջ, Կարին 1914, Թ. 17)։ 1914 Փետր. 4ին ունէր 50 անդամ (Անդ)։ Կու տայ դասախօսութիւններ, որոնց առաջին խօսողը կ'ըլլայ

Տ. Գէորգ Ծ. Վ. Թուրեան (Անդ)։ *Անդրադոյն ծանօթութիւն կը պակսի։*

## 42. ՊՈՆՏՈՍԻ ՀԱՅՈՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

1918 *Դեկտ.ին կը գրէ Պոլսոյ* Ժամանակ (1918, *Թ.* 3393). «*Բերայի Ս. Երրորդութեան եկեղեցիի խորհրդարանին մէջ հաւաքուեցան* Տրապիզոնէն մինչեւ Սինոպ *գտնուած քաղաքներու պոլսեբնակ ազգայիններ, բաւական ստուար թիւով մը եւ որոշեցին* «Պոնտոսի Հայոց Միութիւն» *անուով Մարմին մը կազմել, նպատակ ունենալով* իրենց հայրենակից որբերը հաւաքել եւ տեղաւորել, *չափահասներուն համար* Արհեստանոց *մը հաստատել եւ գործ հայթայթել։ Ներկաները ընտրեցին առժամեայ Վարչական Մարմին մը, զոր կը կազմեն.*

*Տիկ. Սիրանոյշ Քիւրտեան*
*Տիկ. Տիգրանուհի Նաւլեան*
*Օր. Համեստուհի Ճուլալեան*
*Օր. Անժէլ Նուրեան*
*Պր. Գրիգոր Նշանեան*
*Պր. Երուանդ Միրիճանեան*
*Պր. Մկրտիչ Կապրաչեան*
*Պր. Կարապետ Ճահինեան*
*Պր. Համբարձում Համբարեան*

Դիւանը

| | |
|---|---|
| *Երուանդ Միրիճանեան* | *Ա. Ատենապետ* |
| *Տիկ. Տիգրանուհի Նաալեան* | *Բ. Ատենապետ* |
| *Տիկ. Սիրանոյշ Քիւրտեան* | *Ա. Ատենադպիր* |
| *Մկրտիչ Կապրաչ* | *Բ. Ատենադպիր* |
| *Գրիգոր Նշանեան* | *Գանձապետ* |

*(Անդ)* :

43. ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Կազմուած է* Բաթում 1919*ի ամրան*: 1919 *Յուլիս 29ին տեղի ունեցած է Բաթումի մէջ Հայրենակց. Միութեան մեծ Համագումարը, ուր ործեգրուած է Հայրենակց. տուրքի դրութիւնը* (Ժամանակ, 1919, *Թիւ* 3633) : 1919*ին Միութիւնը* 60 *ամ. լիրա կը ղրկէ Տրապիզոն՝ տեղւոյն կարիքներուն համար (Անդ)* :

*Դժբախտաբար մանրամասնութիւն չունինք Բաթումի Միութեան կազմին վրայ: Միութեան կեդրոնը յետոյ* Պոլիս *կը փոխադրուի: 1921 Հոկտ. 2ի Ընդհ. Ժողովքին մէջ կ՚ընտրուի հետեւեալ Վարչութիւնը.*

| | |
|---|---|
| *Տիկ. Մ. Արապեան* | *Ատենապետ* |
| *Պ. Ա. Էթմէքճեան* | *Ատենադպիր* |
| *Ե. Յարութիւնեան* | *Գանձապահ* |
| *Մ. Էմիրեան* | |
| *Ե. Միրիճանեան* | *Անդամք* |
| *Մ. Ղուլիկեան* | |
| *Ե. Ֆնտըլեան* | |

(Ժողովուրդի Ձայնը, *Կ. Պ.* 1921, *Թ.* 918) :

44. ՏՐԱՊԻԶՈՆՈՒ ՀԱՅՐԵՆԱԿՑ. ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Կազմուած է Բոստոնի (Ամերիկա) մէջ։ 100 անգլիական կը գրէ Տրապիզոն՝ 1919—20ին (Նամակ Պատրիարքարանի Դիւանին մէջ՝ Իսթանպուլ, զոր տեսայ 1960ին)։

## ԿԻՒՄԻՒՇԽԱՆԷ

1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

Տրապիզոնի նահանգին վերաբերող Կիւմիւշխանէի հնագոյն Ընկերութիւնը՝ «Ուսումնասիրաց» հիմնուած է 1862ին։ Կը յիշէ «Սկսնակ Բանասէր» իր չահեկան յօդուածին մէջ (Տե՛ս Արեւելք, Կ. Պ. 1898, Թ. 3854), առանց անդրադոյն ծանօթութեան։ Հնութեան մէջ յիշատակութեան մը հանդիպած չենք հայ Մամուլի մէջ։

2. ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

Պոլսոյ Մասիս 1863 Ապրիլ 6ին կը գրէ. «Բերկրութեամբ կ՚իմանանք որ Կիւմիւշխանէի մեր համազգիներն ալ ընկերական միաբանասէր ոգւոյն կարեւորութեանը վերահասու ըլլալով, բաւական ժամանակէ ի վեր Արամեան Ընկերութիւն անուամբ միաբանութիւն մ՚ըրեր են, որուն նպատակը պիտի ըլլայ տեղւոյն հայազգի մանկտւոյն ուսումնական կրթութեանը նպաստամատոյց ըլլալ։ Ընկերութիւնը յաջողեր է յիշեալ քա–

ղաքին մէջ անունով միայն գտնուած վար-ժարանէն զատ՝ հարկաւոր ուսմանց համար այլ ուրիշ վարժարանի մը բանալ, յորում մանաւանդ աղքատ տղայք պիտի կրնան իրենց միտքն օգտակար ուսումներով մշա-կել: Ընկերութիւնը... վերծանութեան Թանգարանի մ'ալ բացեր է, ուր հետզհետէ ազգային լրագիրներով, պարբերական թերթերով եւ ամէն տեսակ օգտակար գըր-քերով արդարեւ մեծ ծառայութիւն մը պիտի ընէ» (Մասիս, Կ. Պ. 1863, Թ. 582):

Ինչպէս կը տեսնուի՝ հիմնումը եղած ըլլալու է իբր 1862ի գարնան:

## 3. ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1886)

Կազմուած է 1886 Յունուարին: Կազ-մած են Կիւմիւշխանէի վարժարանի աշա-կերտները: Նպատակն է՝ «Վարժարանին մէջ Մատենադարան մը հաստատել, որմէ զուրկ է դպրոցը. թէեւ ունեցած է գրքեր, բայց անիշխանութեան օրերուն յափշտակո-ղին ձեռքն է մնացեր...» (Արեւելք, Կ. Պ. 1887, Թ. 951):

1888ին դադրած էին վերոյիշեալ Ընկե-րութիւնները: Տ. Բարթուղումէոս Սարա-ֆեան 1888ին Կիւմիւշխանէ գալով՝ կը հաշտեցնէ խռոված հոգիները, կը քաջալերէ ուսուցիչներն ու աշակերտները եւ «լուծեալ Ընկերութիւնները վերակազմեց» (Մանզու-մէի Էֆքեար, Կ. Պ. 1888, Թ. 6103):

4. ՀԱՅ. ԵՐԻՏ. ՅԱՌԱՋ. ՄԻՈՒԹԻՒՆ (1908—1909)

1910ին *կը յիշուի Կիւմիւշխանէի մէջ* «Հայ Երիտասարդաց Յառաջդիմական Միութիւն» *մը, որ* 1910 *Ապրիլին «Կիլիկիոյ հայ նահատակներուն յիշատակին սգահանդէս մը» կը կազմակերպէ՝ կրօնական արարողութիւններով, բանախօսութիւններով, որոնց ներկայ կ՚ըլլայ «գրեթէ ամբողջ հայ հասարակութիւնը»* (Յառաջ, *Կարին* 1910, *թ.* 31, 39)։ *Կազմուած կ՚երեւայ* 1908—1909*ին*։

*

## ԿԻՐԱՍՈՆ

1. ՊԱՐԹԵՒԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1861)

*Հիմնադիրն է* Սերովբէ Սահակեան՝ *նպատակ ունենալով դպրոցներու բարեկարգութեան հոգ տանիլ* (Մանզումէի էֆքեար, *Կ. Պ.* 1872, *թ.* 1917)։ *Ուրիշ կողմէ ծանօթութիւն մը չենք գտած*։

2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863)

1863 *Հոկտ.* 1*ին* 40 *երիտասարդներ հիմնած են*։ *Շաբաթական բաժնեվճարումներով Ընկերութիւնը* 1865*ին կրցած է ունենալ* 8000 *ղուրուշի գումար մը*։ *Ընկերութեան անդամները* «Լուսաւորչեան *վարժարանին բոլոր հոգը իրենց վրայ առնելով՝ մէջերնին վեց անձինք ընտրած են եւ ասոնց մէջէն ալ դարձեալ քուէից առաւելութեամբ*

*Տնօրէն ընտրուած է* Յովակիմ Ս. Սօմունճեան» (Մասիս, 1865, *Թ.* 699: — *Տե՛ս նաեւ* Արեւելք, Կ. *Պ.* 1898, *Թ.* 3854):

*Ընկերութիւնը շատ օգտակար եղած է Կիրասոնի Հայութեան. Թողած է կալուածներ ու դրամագլուխ, որոնցմէ Կիրասոնի Հայութիւնը ամէն տարի* 30 *ոսկի կը գանձէ* (Մասիս, 1881, *Թ.* 2853): *Ո՛րքան տեւած ըլլալը չենք գիտեր:*

3. «ՈՍԿԵԴԱՐ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865—70)

*Կը յիշուի Պոլսոյ Հայ Պատրիարքարանի (Գումգափու) Դիւանի հին արձանագրութեան մը մէջ՝* անթուական, *զոր անձամբ տեսանք եւ օրինակեցինք: Ընկերութեան* նպատակն է՝ «Թամզարայի Արամեան դպրոցին լաւագոյն ապագայ մը պատրաստել»: *Ունեցած է* 50 *անդամ եւ* 170 *ոսկի դրամագլուխ: — Ընկերութիւնս չի յիշուիր Հայ Մամուլի մէջ:*

4. ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

*Հիմնուած կ՚երեւայ* 1871 *Յունուար* 1*ին*, *զի* 1872 *Յունուար* 1*ին գրուած գրութիւն մը իրեն խորագիր ունի* «Ի տարեդարձի Սանուց Ընկերութեան» (*Տե՛ս* Աստղիկ Քիրասոնոյ, *Կ. Պ.* 1873, *էջ* 17), *թէեւ այդ գրքոյկին մէջ* (*էջ Ա*) *կ՚ըսուի թէ* 1871ի Մայիս 1էն սկսեալ կազմեր են: *Պոլսոյ* Հայրենիք (1872, *Թ.* 88) *թղթակցութիւն մը կը հրատարակէ*

գրուած Կիրասոնէն 1872 Յունուար 22 Թուականով, ուր կ'ըսուի նոյնպէս թէ «Ընկերութեան տարեդարձը տօնեցինք Յունուար 13ին»։ Եթէ 1871 Մայիս 1ին հիմնուած ըլլար՝ 1872 Յունուարին չէր կրնար տարեդարձը տօնել։ Կը թուի թէ հիմնուած է 1871 Յունուար 1ին, բայց հրատարակուած է 1871 Մայիս 1ին։

Կ. Վահան Բարսեղեան, Կիրասոնի ուսուցիչը եղած է նախաձեռնողը Ընկերութեանս հիմնումին, իսկ հիմնադիրներն են Լուսաւորչեան վարժարանի 30 աշակերտները։ Բաժնեվճարն է շաբաթական 10 փարա (Հայրենիք, անդ)։

Սկիզբը մասնաւոր նպատակ մը չեն ունեցած։ Ընկերութիւնը Կիրասոնի մէջ տարածելու համար կը ձեռնարկեն Ձեռագիր Շաբաթաթերթ մը հրատարակել՝ «Աստղիկ Քիրասոնոյ» անունով։ Երբ 1500 ղուրուշ կը հաւաքուի իրենց անդամավճարներով ու թերթի վաճառումով՝ 1874ին տպագրութեամբ լոյս կը հանեն այդ իրենց Ձեռագիր գրութիւնները՝ «Աստղիկ Քիրասոնոյ, երկասիրութիւնք աշակերտաց Լ. վարժարանի Քիրասոնոյ» անունով։ Տպագրութիւնը տեղի ունեցած է Պոլիս։ — Ընկերութիւնը 1873ին 31 անդամ ունէր, որոնց անունները հրատարակած է «Աստղիկ Քիրասոնոյ» (անդ՝ էջ 44)։ Յայտնի չէ թէ ո՛րքան տեւած է Ընկերութիւնը։

5. ՎԱՐԱԶԴԱՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

1876 Մարտ 30ին կը տեղեկագրէ Թըղթակից մը Կիրասոնէն. «Տասն եւ հինգ ամսէ ի վեր Հոս Հայ երիտասարդք Վարազդատեան անուն Ընկերութիւն մը կազմելով՝ Ընթերցարան մը բացած են, ուր ամէն գիշեր հաւաքուելով ընթերցման կը պարապին... ամէն տեսակ ազգային լրագիր ունին» (Մանզումէի էֆքեար, Կ. Պ. 1876 Թ. 3097)։ Հիմնուած է 1875 Յունուար 1ին։

Ընկերութիւնը համակրանք գտնելով Հայութեան կողմէ՝ շատ մը թերթեր ու գրքեր նուէր կը ստանայ, որով կը կազմակերպէ «Թանգարան» (Գրադարան) մը, որուն պետն է Միսաք Ղուկասեան (Մանզ. էֆ. 1875 Թ. 2860)։ Հակառակ այս լաւ սկզբնաւորութեան՝ Ընկերութիւնը մէկուկէս տարիէն վերջ դադրած է՝ ժառանգութիւն ձգելով գրքեր ու թերթեր եւ 20 ոսկի ալ շահու տրուած (Մասիս, 1881 Թ. 2853)։ 1881ին կը փորձեն վերակազմել (Անդ՝ Թ. 2875—7)։

6. ԱՐՄԵՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875—77)

Կը յիշուի 1881ին՝ «Վարազդատեան»էն վերջ։ Եղած է կարճատեւ (Մասիս, 1881 Թ. 2853)։

7. ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1876—78)

1881ին կը յիշուի իբրեւ կարճատեւ Ընկերութիւն մը, որ սակայն «ազգին օգուտ մը բրած է», կը գրէ Մասիս (1881 Թ. 2853)։

### 8. ՀԱՅԿԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1880—81)

Ծահասիրական Ընկերութիւն մ'է, բայց բացած է նաեւ Ընթերցարան—Սրճարան մը (Մասիս, 1881 թ. 2874)։

### 9. ՋԱՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1883)

Անստորագիր թղթակից մը կը գրէ 1884 Մարտ 24ին. «Այս օրերս վարժարանի ուսումնաւարտ աշակերտներ ու ուսումնասէր երիտասարդներ Ընկերութիւն մը հաստատեցին ընթերցասիրութիւնը տարածելու համար» (Մասիս, 1884 թ. 3654)։ Ընկերութեան անունը կը յիշէ երկրորդ թղթակից մը, որ 1884 Մայիս 31ին կը գրէ թէ Սահմանադրութեան տարեդարձի հանդէսը կը պատրաստէ «նորոգ հաստատեալ Ջանասիրաց Ընկերութեան, որ կազմուած է ազգային վարժարանէն ելած պատանեկաց խմբէ մը» (Մասիս, 1884 թ. 3704։ — Արեւելք, կ. դ. 1885 թ. 439)։

Նախաձեռնողն է Կ. Վահան, Լուսաւորչեան վարժարանի Տնօրէն—դասատուն։ Ընկերութիւնը թատերական երեկոյթ կը սարքէ Թրքերէն, խաղալով «Մուխաթարալը օրման» եւ Պէշիկթաշլեանի «Երից Քաջաց»ը (Արեւելք, 1884 թ. 219, 257, 276)։

### 10. ԴԻՄԱԿԱՒՈՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1900)

Կազմուած 1900ի Բարեկենդանին՝ տուած է շարք մը ներկայացումներ (Տե՛ս Արեւելք, 1900 թ. 4272)։

### 11· ՅԱՌԱՋԴԻՄԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ (1908)

Հիմնուած է 1908 Սեպտեմբերին։ Հիմնադիրներ. — Յարութիւն Պիպեռճեան, Միհրդատ եւ Զարեհ Ծաղիկեաններ։ Նպատակ. «Ընթերցանութեան միջոցաւ երիտասարդութիւնը զարգացնել» (Արեւելք, 1908 թ. 6924)։

### 12· ՀԱՅ ԹԱՏԵՐԱԿԱՆ ԱԴԱՄԵԱՆ ԽՈՒՄԲ (1909)

Հիմնուած է 1909ի սկիզբը։ 1909 Փետր. 19ին ունէր հետեւեալ վարչակազմը.

Մ. Գարայեան — Ատենապետ
Վ. Խ. Պատլեան — Ատենադպիր

(Նամակ Կիրասոնէն, զոր տեսանք 1960ին Հայ Պատրիարքարանի Դիւանին մէջ, Գումգափու)։

### 13· ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1909—10)

Կազմած են վարժարանի աշակերտները եւ կու տան ներկայացումներ (Փեթակ, Կիրասոն 1910, էջ 52)։

### 14· ՀԱՅ ԿԱՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

Կը յիշուի 1911 Յունուարին։ Զենք կարծեր թէ հին ըլլայ։ Միայն Ազատամարտ (Կ. Պ. 1911 թ. 481) կը յիշատակէ։

### 15· ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918—19)

Կազմած են Պարիս բնակող Կիրասոնցիք՝ նպատակ ունենալով. «Սատարել Կի–

բասոնի վերածաղկման ու որբերու պատըսպարման... *Հաւաքած են 900 ֆր.ի նպաստ Կիրասոնցի կարօտեալներու»* (Ժամանակ, Կ. Պ. 1919 Թ. 3596):

16. ՀԱՅՐԵՆԱԿՑ. ՄԻՈՒԹԻՒՆ (1920)

*Կազմուած է* Պոլիս 1920*ին եւ վաւերացուած* 1921*ին* (Ժողովուրդի Ձայնը, Կ. Պ. 1921 Թ. 810: — *Տ'ես նաեւ* Թէոդիկ, *Ամէնուն Տարեց*. 1922, *էջ* 371): *Իր վարչութիւնը կը կազմէին.*

*Գ. Ի. Վէլէտեան* — *Ատենապետ*
*Ա. Մ. Աչըքեան* — *Ատենադպիր*

## ՍԱՄՍՈՆ

1. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862—63)

Սամսոնի *մէջ* դպրոց մը *կառուցած է* ազգային Ընկերութիւն մը 1863 *Օգոստոսէն* վեց ամիս առաջ: *Մանրամասնութիւն չկայ թէ ի՞նչ Ընկերութիւն է կառուցանողը եւ ե՞րբ հիմնուած է ան: Աճաւասիկ թղթակցին գրածը այս մասին. «Վսեմ. Րիզա էֆ. իր խոստման համաձայն քաղաքիս մէջ* 6 ամիսէ ի վեր ազգային Ընկերութեամբ կառուցուած դպրոցն *այցելութեան գալով՝ հայ ազգիս վիճակին վրայ տեղեկութիւն ուզեց»* (Մասիս, Կ. Պ. 1863 Թ. 600, *Օգոստ.* 10):

«Ազգային Ընկերութեամբ» խօսքը հաւանօրէն մշակութային Ընկերութիւն մը կ'ակնարկուի:

## 2. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869—70)

Կը յիշուի 1871 Մարտին (Փունջ, Կ. Պ. 1871 Թ. 661): — Ընկերութիւնը դադրած է 1871ի ամրան (Փունջ, անդ՝ Թ. 681):

## 3. ԴՊՐՈՑԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1876)

Հիմնուած է 1876ի սկիզբը՝ ազգային վարժարանին մնայուն եկամուտ մը ապահովելու համար (Փունջ, 1876 Թ. 1078):

## 4. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1878)

Կը յիշէ Պոլսոյ Լոյս թերթը (1878 Թ. 76), առանց որեւէ անդրագոյն ծանօթութեան: Հիմնումը բաւական հին ըլլալու է, զի 1878ին կը վերակազմէ զայն Գարեգին Վ. Սրուանձտեանց (Թորոս Աղբար, Ա., էջ 2):

1884ին տակաւին կանգուն է. կը յիշատակէ զայն ճամբորդ մը, դժբախտաբար լոկ անունով (Փունջ, Կ. Պ. 1884 Թ. 1876):

## 5. ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884)

Թղթակից մը 1884 Փետր. 24ին կը գրէ Սամսոնէն. «Ամսոյս 17ին Հինգշաբթի օր ազգային վարժարանի Սանուց նորակազմ Ընկերութիւնը ի նպաստ աղքատիկ ուսանո–

ղաց, Ս. Վարդանանց տարեդարձի հանդէսն կատարեց ազգ. Ներսիսեան վարժարանին մէջ...» (Փունջ, 1884 թ. 1879)։ Հաւանօրէն 1884ի Ամանորին հիմնուած է։ Ուրիշ տեղ չենք հանդիպած։

6. «ՍԷՐ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884—85)

Հիմնադիրները երիտասարդներ են եւ Ընկերութիւնը «Երիտասարդաց Ընկերութիւն» ալ կը կոչուի։ Հիմնումի թուական չենք գտներ, չենք կարծեր թէ 1884էն առաջ հիմնուած ըլլայ։ Իր մասին յիշատակութիւններ կը յաճախեն 1887էն սկսած։ Ժիր գործունէութիւն ունի։ Կազմած է թատերական խումբ մը իր անդամներէն, որուն դերասանապետն է Ստեփան Հայկունի եւ կու տայ յաջող ներկայացումներ ի նպաստ Սամսոնի երկսեռ վարժարաններուն (Տե՛ս Փունջ, 1888 թ. 2301։ — Արեւելք, 1888 թ. 1273)։ 1888 փետր. 27ին տուած «Գայրիթան» թատերախաղէն եւ կատակերգութենէ մը կըստանայ 70 ոսկի զուտ շահ (Փունջ, 1888 թ. 2087)։ — Նոյն ընկերութեան թատերախումբն է որ իբրեւ «Թատերական Ընկերութիւն» բացէն ալ կը յորջորջուի (Փունջ, 1887 թ. 2039. հմմտ. անդ՝ թ. 2081)։

## 7. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1897)

Պոլսոյ Փունջ (1897 թ. 2583, Դեկտ. 20) կը գրէ. «Սամսոնի մէջ յորդորանօք Գեր. Տեղապահին Աղքատախնամ Ընկերութիւն մը հաստատուեր է՝ կարօտ ազգայնոց համար բժիշկ, դեղ եւ այլ պիտոյք հայթայթելու նպատակաւ»: Մանրամասնութիւն կը պակսի:

## Տ. ԴՊՐԱՑ ԴԱՍ (1902)

Կազմուած է 1902 Յունուար 9ին: Կազմողն է Սամսոնի Առաջնորդ Յակոբ Աշոտ Սրբազան: Թղթակից մը 1902 Փետր. 17ին կը գրէ Սամսոնէն. «Սրբազան Առաջնորդը, հոս եկած օրէն ի վեր եկեղեցական երգեցողութեանց նախանձախնդիր ըլլալը ցոյց տուաւ... Ծննդէն երեք օր ետքը պաշտօնապէս Առաջնորդարան կանչելով ամբողջ երգեցիկ խումբը, կազմակերպեց Դպրաց Դաս մը տասներկու անդամներէ: Նորին Սրբազնութիւնը կարդաց նաեւ Կեդր. Կրօնական Ժողովի Դպրաց Դասու Կանոնագիրը... ուր նաեւ առաջին դրամագլուխը կազմուեցաւ, Սրբազան Հօր հետ միատեղ տասնական ղրուշ նուիրուելով սնտուկին: Դպրապետ Նշան էֆ. Զատրճեան... շաբաթուան երկու գիշերները կը դասախօսէ... դպիրները 10 օսմ. ոսկի նուիրեցին եկեղեցիին շինութեան յանուն Դպրաց Դասին» (Արեւելք, Կ. Պ. 1902 թ. 4881):

1913ին Ընկերութիւնը վերակազմուած՝ կը շարունակէր իր գործը․ Օ․ Պալըգճեան «հիմնադիր—ղեկավարը» կը կոչուի (Աշխատանք, Իզմիր 1913 թ․ 150)։

## 9․ «ՏԻԿՆԱՆՑ ԵՒ ՕՐԻՈՐԴԱՑ» ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

1908ի Սահմանադրութենէ վերջ մինչեւ 1909 Յունիս կատարուած են քանի մը «կըրթական հիմնարկութիւններ», որոնցմէ մէկն է «Տիկնանց եւ Օրիորդաց» Միութիւնը (Խարբերդ, Մամոն 1909 թ․ 18)։ Ունեցած է, կ՝ըսուի, իր Ծրագիր—Կանոնագիրը (Անդ)։

## 10․ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1912)

Կազմուած է Հայ Գրի Գիւտի մեծ Յոբելեանին առթիւ 1912ի վերջը։ 1913 Յունուարին կը գրէ «Կոչը»․ «․․․ Նպատակն է վիճակիս գիւղօրէից կրթութեան գործին ծաւալման օժանդակել» (Նոր Այգ, Մարզուան 1913, էջ 23)։ Անդամավճարն է՝ մուտք 5 դահեկան եւ ամսական մէկ դահեկան (Անդ։—Տե՛ս նաեւ Բիւզանդիոն, Կ․ Պ․ 1912 թ․ 4918)։

## 11․ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

Կազմուած է 1913ի սկիզբները (Աշխատանք, Իզմիր 1913 թ․ 150)։

## 12․ «ՓԱՐՈՍ» (1919—20)

Հիմնած են Օրիորդները, դուցէ իբրեւ մարզական Միութիւն մը (Տե՛ս Ժամանակ, Կ․ Պ․ 1920 թ․ 3777)։

### 13. «ԽԱՐԻՍԽ» (1919—20)

Աս ալ երիտասարդներէն կազմուած է եւ նախորդին հետ 1920ին կը բանան Լսարան—Ընթերցարան մը (ժամանակ, անդ)։

## ՕՐՏՈՒ

### 1. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1855)

Պոլսոյ Մասիս (1855 թ. 175) 1855 Յունիս 2ին կը գրէ. «Օրտու քաղաքի... բարեխնամ Առաջնորդ արժանայ. Տ. Մեսրոպ Ծ. վ.ին յորդորանօքը ուսումնասիրական Ընկերութիւն մը կազմեր՝ դպրատուն մըն ալ շինելու ձեռք զարկեր են իրենց զաւկներուն համար»։ Դժբախտաբար մոռցուած է Ընկերութեան անունը յիշել։

### 2. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

1869 Դեկտ. 6 թուականը կրող թղթակցութեան մը առթիւ կ՚ըսուի թէ «Հայկուհեաց Ընկերութենէն առաջ ուրի՛շ Ընկերութիւն մը կազմուած է։ Արդ, Օրտուի «Հայկուհեաց»ը 1868ի աշնան հիմնուած է։ Հետեւաբար անկէ առաջ եղածը հիմնուած ըլլալու է 1868ի ընթացքին (Տե՛ս Մանզումէի էֆքեար, Կ. Պ. 1869 թ. 1105)։ Ի՞նչ էր սակայն այդ Ընկերութեան անունը։ — Չենք գտներ որեւէ տեղ։

### 3. «ՀԱՅԿՈՒՀԵԱՑ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

*Կազմուած է* 1868*ի* աշնան, *Օրտուի* երիտասարդներէն: *Նպատակն է*. «Օրտուի աղքատիկ աղջկանց դաստիարակութիւնը: *Ընկերութիւն մը, որուն անդամակցած է ամբողջ երիտասարդութիւնը*» (Մանզ. էփքեար, 1870 *թ*. 1261): *Վարչութիւնը կը կազմէին*.

*Յ. Բ. Անդրէասեան* — *Տնօրէն*
*Մ. Պ. Հէքիմեան* — *Գանձապետ*

*Հիմնադրութեան նախաձեռնող եղած է* Յովակիմ Անդրէասեան (Մանզ էփ. 1869 *թ*. 1105): *Իրենց ձգտումն եղած է*՝ «բաւական դրամագլուխ մը ունենալէն վերջ՝ աղջկանց դպրոց մը բանալ (Մանզ. էփ., 1870 *թ*. 1457): — Գէորգ Մ. Աստուածատուրեան կրպակ մը *կը նուիրէ Ընկերութեան* (Օրագիր, *Կ. Պ*. 1871 *թ*. 427): 1872*ին թատերական ներկայացում մը կու տան ի նպաստ* «Հայկուհեաց»*ին* (Փող, *Կ. Պ*. 1872 *թ*. 9): *Կրցած է ունենալ* 550 *օսմ. ոսկիի դրամագլուխ մը*: 1880*ին կրնայ շինել* աղջկանց վարժարանի շէնք մը, *որմէ առաջ*, *հաւանօրէն բացած էր արդէն Ընկերութիւնը իր ծրագրած* աղջկանց վարժարանը, *զի* 1881*ին* աղջկանց վարժարանին *կը նուիրէ Յովակիմ Անդրէասեան* Լոյս *թերթը* (Լոյս, *Կ. Պ*. 1881 *թ*. 173):

1882*ին* դադրած ըլլալով *Ընկերութիւնը*՝

*ջանք կը թափուի վերակազմելու զայն* (Լոյս, 1882 *թ.* 257)։

4. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

Առանց անունը տալու՝ 1870*ին կը յիշուի* Նոր Ընկերութիւն *մը*, որ կը հոգայ ազգային վարժարանը (Մանզ. էֆ., 1870 *թ.* 1457)։

5. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

1872 *Մարտ* 2 *թուական թղթակցութեան մը մէջ կ'ըսուի. «Արդէն յայտնի է հասարակութեան որ Օրտուի մէջ* Ընթերցասիրաց Ընկերութիւն *մը հաստատուած է եւ մեծակառոյց* Ընթերցարան *մ'ալ ունեցած է»* (Փող, 1872 *թ.* 50։ — *Տե՛ս նաեւ* Օրագիր, *Կ. Պ.* 1872 *թ.* 681)։ *Հիմնուած կը թուի ըլլալ* 1871*ի ընթացքին*։

6. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1880)

*Կը յիշուի հանգանակութեան մ'առթիւ* 1880 *Յունիսին* (Թէրճիւմանը էֆքեար, *Կ. Պ.* 1880 *թ.* 846)։ *Ուրիշ ծանօթութիւն կը պակսի*։

7. ՕԺԱՆԴԱԿ Ե. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1880)

Միայն անունով *եւ միայն* այս ձեւով *կը յիշուի հանգանակութեան մ'առթիւ* (Թէրճ. էֆ., *անդ.*)։ *Թերեւս «Օժանդակ* Երիտասարդաց *Ընկերութիւն»*։

## 8. ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1885)

1885ի *վերջը կազմուած է* ։ «*Կը մատակարարէ վարժարանաց ներքին պիտոյքը եւ կը պատրաստուի հաստատել* Ընթերցարան *եւ* Լսարան, *ազգայինք ուրախութեամբ կը քաջալերեն զՍանունս*», *կը գրէ Պոլսոյ* Հայրենիքը (1886 *Յունուար* 31: — *Տե՛ս նաեւ* Արեւելք, *Կ. Պ.* 1886 *թ.* 613) ։ *Հաւանօրէն* «Հայկազեան վարժարան»*ի Սաներն են հիմնադիրները* ։

## 9. ԲԱՐԵՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1886)

*Անստորագիր թղթակից մը Օրտուէն կը գրէ* 1886 *Յունուար* 26 *թուականով*, «*Հայ Տիկնայք* անցեալ օր *հաւաքուելով* Հայկուհեաց վարժարանի *սրահին մէջ*... *հիմնեցին* Բարեսիրական Ընկերութիւնը, *որոյ նպատակն է* օժանդակել նոյն վարժարանի պիտոյից եւ խնամարկել նմա» (Հայրենիք, 1886 *թ.* 1930) ։

## 10. ԱՂՔԱՏԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (…1895)

*Կը յիշուի* 1895 *Օգոստոս* 14 *թուակիրով նամակի մը մէջ, գրուած Օրտուէն, զոր տեսանք* (1960*ին*) *Պոլսոյ Պատրիարքարանի մէջ*: *Կազմութեան մէջ կարեւոր դեր կատարած է* Տէր Եղիշէ քահանայ : 1895*ին Վարչութիւնը կը կազմէին*.

Հրանդ Յ. Անդրէասեան — Ատենապետ
Ա. Ա. Մուսալեան — Ատենադպիր
Անդրանիկ Անդրէասեան — Գանձապետ

## 11. ԲԱՐԵՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1898)

1900 *Հոկտ. 31ին Օրտուէն գրուած Թղթակցութիւն մը կ'ըսէ.* «1898*ին* Բարեսէր Տիկնանց նորակազմ Ընկերութիւն *մը նախաձեռնութիւնը ունեցաւ հանդանակութիւն մը բանալու կիսաշէն վարժարանին շինութիւնը աւարտելու նպատակաւ... Հանդանակութիւնը պատկառելի գումարով մը պսակուեցաւ* (150 *լիրա*)*, որմէ քաջալերուելով ժողովուրդը՝ վարժարանին շինութիւնը սկսաւ... մեր հոյակապ վարժարանը կառուցանելու բարեբաղդութիւնը ունեցանք»* (Արեւելք, 1900 *թ.* 4476) : — *Զենք կարծեր թէ* 1886*ի Բարեսիրական»ը նոյն ըլլայ ասոր հետ :*

## 12. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1899)

*Օրտուի* պատանիները 1899*ին Ընկերութիւն մը կազմած են տեղւոյն վարժարանին նպաստելու համար : Դժբախտաբար տեղեկատուն չի յիշեր Ընկերութեան տիտղոսը :*

## 13. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1899)

*Վերնոյն նման Ընկերութիւն մ'ալ Օրտուի վարժարանի* աշակերտները *հիմնած են* 1899*ին : Թղթակից—տեղեկատուն գոհ եղած*

է հետեւեալ Լակոնական բառերով ծանուցանել այդ երկու դէպքերը։ Սա կը գրէ Օրտուէն 1900 Մարտին սկիզբը թէ հոն 1899ին երկու նոր Ընկերութիւն կազմած են, մին պատանիները, իսկ երկրորդը՝ աշակերտները «Իւրովսանն հոգալու վարժարանի դասարանական պիտոյքը··· այժմ 6—7 ոսկի··· ունին» (Արեւելք, 1900 թ.4270)։

Զմոռնանք որ ատիկա Համիտի այն շըրջանն է, երբ արգիլուած բան մ'էր «Ընկերութիւն» բացատրութիւնը. Հետեւաբար կրնայ ենթադրուիլ որ դիտմամբ յիշուած չեն Ընկերութեանց անունները։

14. ԾԽԱՐԳԵԼԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1900)

«Քանի մը ամիսներէ ի վեր Օրտուի հայ վաճառականներու նախաձեռնութեամբ հաստատուած է Ծխարգելական Ընկերութիւն մը», կը գրէ Արեւելք (1900 թ. 4415) 1900 Սեպտ. 11ին։ Մուտքի վճարումն է 30 ղրշ. ունի 180 անդամ երեք ազգէ (Անդ)։

15. ՀԱՅՈՒՀԵԱՑ ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ՄԱՐՄԻՆ (1907)

Մշակութ. Ընկերութիւն մ'է, որ 1907 Դեկտ.ին նորակազմ է եւ աղջկանց վարժարանի սրահին մէջ բանախօսութիւն կը սարքէ եւ այդ առթիւ Էմմանուէլ Ծ. Վ. Պալեան կը խոստանայ մարմնոյն նուիրել 50 կտոր գիրք (Փունջ, 1907 թ. 235)։ 1908էն վերջ անունը փոխելով՝ կ'ըլլայ «Հահուհեաց Յառաջդիմասէր Ընկերութիւն»։ 1911ին ունի իր

Գրադարանը, *ուր կը հաւաքուին եւ ընթեր-ցումի կը պարապին: Մերթ տեղի կ'ունենայ նաեւ* ճառախօսութիւն (Ազատամարտ, *Կ. Պ.* 1911 *Թ.* 530):

16. ԴՊՐԱՑ ԴԱՍ (1907)

*Կազմուած է* 1907 *Դեկտ.ին: Հիմնադիրն է* Բիւզանդ Խոշեան, *դպրապետ Օրտուի* Ս. Աստուածածին *եկեղեցւոյ:* Կանոնագիրը *կազմուած է Պոլսոյ Դպրաց Դասի Կանոննե-րէն* (Նամակ Օրտուէն՝ 1908 *Մայիս* 16*ին գրուած, զոր տեսայ Հայ Պատրիարքարանին մէջ,* 1960*ին, Իսթանպուլ:*

17. ԱԶԳԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1907?)

*Կը յիշուի անթուական արձանագրու-թեան մը մէջ (Պատրիարքարան, Պոլիս): Նպատակն է* վարժարանի ծախքերուն բացը գոցել:

18. ՀԱՅ ՑԱՌԱՋԴԻՄԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ (1908)

*Կազմուած է* 1908 *Նոյեմբեր—Դեկտեմ-բերին: Դեկտ.* 2*ին* Զէյթունի *եւ* Սասունի *ողբերգութեան կը ղրկէ* 13 *ոսկի: Վարչակ. կազմն էր.*

*Պ. Ք. Ջիլճեան* — *Նախագահ*
*Նուէր Գալուստեան* — *Քարտուղար*

1910*ի սկիզբը* վերակազմուելով՝ *կը կոչուի «Հայ Յառաջդիմասէր* Ընթերցասի-րաց Միութիւն» *եւ կը կազմակերպէ ճառա-*

*խօսութիւններ* (Ազատամարտ, 1910 *թ*. 230):

### 19. ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ ՕՐՏՈՒԻ (1920?)

*Կազմուած է* Պոլիս: *Կը յիշուի* 1922 *Օգոստ*. 8 *թուական կրող նամակի մը մէջ* (*Պատրիարքարանի Դիւան*, *Պոլիս*): *Վարչակ*. *Մարմնէն ծանօթ են*.

*Տօքթ. Անդրէասեան* *Ատենապետ*
*Հայկ Գըլճեան* *Ատենադպիր*

### 20. ՀԱՅՐԵՆԱԿՑ. ՄԻՈՒԹԻՒՆ (1928)

*Կազմած են* Մարսէյլաքնակ *Օրտուցիներ*, 1928*ի առաջին ամիսներուն*: *Անդրանիկ Վարչութիւնը կազմած են*.

*Եդուարդ Պ. Անդրէասեան* *Ատենապետ*
*Յակոբ Աչճեան* *Ատենադպիր*

(Յառաջ, *Փարիզ* 1928 *թ*. 718):

## ՊԱՖՐԱ

### 1. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

Տրապիզոնի *նահանգին վերաբերող* Պաֆրայի *Հնադոյն Ընկերութիւնն է ասիկա*, *որ* Տէր Յովհաննէս Տապանեանի *եւ* Անդրանիկ Այվազեանի *նախաձեռնութեամբ կը հիմնուի* 1868 *Մայիսին եւ կը սկսի գիշերային եւ կիրակնօրեայ դասընթացք մեծերու* (Փունջ,

*Կ. Պ.* 1868 *թ.* 169) : — 1875*ին* Պօղոս Վ. Նաթանեան *կը վերակազմէ Ընկերութիւնը* (Փունջ, 1875 *թ.* 970 *եւ թ.* 976) :

2. ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

*Կը յիշուի* 1873 *Յունուար* 12*ին եւ* նորակազմ *է* (Փունջ, 1873 *թ.* 772) :

3. ···ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875—76)

*Անունը անծանօթ այս Ընկերութիւնը հիմնուած է Պաֆրայի* Եղիսաբեթեան աղջկանց վարժարանը *հաստատելու համար* (Փունջ, 1876 *թ.* 1067, *Մարտ* 30) :

4. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (···1878)

1878*էն առաջ կազմուած կ'երեւայ, գի* Գարեգին Վ. Սրուանձտեանց *կը գրէ որ* «Ընթերցասիրաց Ընկերութիւնը կազմաւորեցի··· երիտասարդները բուռն զօրութեամբ ճիգ կ'ընէին *Ընթերցասիրաց Ընկերութեան* Գործադիր անդամ ըլլալ» (*Թորոս Աղբար*, *Ա.* *էջ* 7) : *Կը թուի թէ* վերակազմած է :

5. «ԱՂՋՆԻՔ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879—80)

*Կը յիշուի* 1880*ի* ամրան՝ Ե. Տեղեկագրով, *ուր կը տեսնուի թէ նպատակ ունի գործել* Պաֆրայի *մէջ եւ* Հայաստան (Մասիս, 1880 *թ.* 2720) :

### 6. ՇԱՀԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1882)

Երեք հատ *Շահասիրական Ընկերութիւն կայ Պաֆրայի մէջ 1882ին, որոնցմէ մին իր վրայ կ'առնէ* աղջկանց դաստիարակութեան *հոգը* (Մասիս, 1882 *թ*. 3128)։

### 7. ԹՈՐԳՈՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1886)

*Կը յիշուի* 1886*ին* լոկ անունով (Մասիս, 1886, *էջ* 918)։

### 8. ՑԱՌԱՋԴԻՄԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Կազմուած կ'երեւայ* 1908*ի ամրան*. 1908 *Օգոստ.ին* Ընթերցասիրաց Ակումբ *կը բանայ* (Մանզումէի էֆքեար, *Կ. Պ.* 1908 *թ*. 2217)։

### 9. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ (1909)

1909*ի սկիզբները կը յիշուի Պաֆրայի մէջ* — յատուկ կնիքով — «Աղքատախնամ Հայոց Պաֆրայի», *որուն Վարչութիւնը կը կազմեն* 1909 *Ապրիլ* 3*ին*.

| | |
|---|---|
| *Առաքել Տէր—Մովսէսեան* | *Ատենապետ* |
| *Ստեփան Իկիպար* | *Ատենադպիր* |
| *Կարապետ Ներսէսեան* | *Գանձապետ* |

*(Նամակ Պաֆրայէն. Դիւան Հայ Պատրիարքարանի, Գումգափու)*։

### 10. ԴՊՐԱՑ ԴԱՍ (1913)

*Կազմուած է* 1913 *Հոկտ.* 20*ին Պաֆրայի* Ս. Կարապետ եկեղեցւոյ շրջանակին մէջ: *Հիմնադիրն է* Գրիգոր Պօյաճեան՝ *երաժիշտ — ուսուցիչ* (*Նամակ Պաֆրայէն, զոր տեսայ* 1960*ին՝ Հայ Պատրիարքարանի մէջ, Իս-թանպուլ*):

## ՉԱՐՇԱՄՊԱ

### 1. ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863)

*Կ. Պոլսոյ Հայ Պատրիարքարանի Դիւա-նին մէջ հին արձանագրութիւն մը տեսանք* 1960*ին, ուր գրուած էր թէ* Տրապիզոնի *շրջանին վերաբերող* Չարշամպայի *Հայերը* 1863*ին հիմնած են* «Մամիկոնեան Ընկերու-թիւնը», *որուն նպատակն եղած էր* ազգային վարժարանին նպաստել: — *Հայ Մամուլին մէջ յիշատակութեան մը չենք հանդիպած*:

### 2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

*Վերոյիշեալ արձանագրութեան մէջ մի-այն յիշուած է Ընկերութիւնս՝ հիմնուած* 1864*ին՝ նպատակ ունենալով* «ծրի թուղթ եւ գրենական մատակարարել աղքատ աշա-կերտներուն»:

### 3. ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

*Ցիշեալ արձանագիրը կը հաստատէ որ Ընկերութիւնս* 1874*ին հիմնուած է իրեն*

*նպատակ ունենալով* «ազգային վաճառակա-նութիւնը զարգացնել»։ *Ունեցած է* 40 *ան-դամ*։

4· ԱՂՔԱՏԱԽՆԱՄ (1901)

*Պոլսոյ* Փունջ (1901 *Թ*· 2762) 1901 *Նոյ*· 3*ին կ'իմանայ որ* «Չարշամպայի մէջ Աղքա-տախնամ Մարմին մը կազմուեր է չքաւոր ուսանողներին երեք տարի խնամելու նպատա-կաւ»։

## ԻԻՆԻԱ

1· ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1872)

*Կը թուի թէ* հինէն *գոյութիւն ունեցող Ընկերութիւն մըն է տոհկա եւ վերջապէս* 1872*ին* դադրած է։ 1872*ին* կը վերակազմուի *ուրիշ անունով*։ *Ահա այս մասին* Թադէոս Կ· Խօֆուզեանի *գրածը* 1872 *Յունիս* 20*ին*· «Ընթերցասիրաց Ընկերութիւնը յՈւսումնա-կան Ընկերութիւն փոխադրեալ է, *այսինքն՝* մեռեալն ի կենդանութիւն յարուցեալ է» (Փունջ, 1872 *Թ*· 31)։ *Իր նպատակն եղած է* դպրոցին պէտքերն հոգալ (*Փունջ, անդ*)։

2· ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

*Ինեպոլի այս Ընկերութեան յիշատակու-թեան համար խիկեցանք Կ· Պոլսոյ Հայ Պատ-րիարքարանի* (*Գումղափու*) *Դիւանի թուղ-թերուն մէջ, ուր անթուական արձանագրու-թիւն մը — գրուած* Տրապիզոնի նահանգին վերաբերող նիւթերու մասին — *կը յիշէ Ըն-*

*կերութիւնս՝ հաստատուած* 1875*ին՝ նպատակ ունենալով* դպրոցին աշակերտներու պիտոյքն հայթայթել:

*Չի յիշուիր Հայ Մամուլի մէջ:*

3· ՄԵՍՐՈՊԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875?)

*Վերոյիշեալ հին արձանագրութեան մէջ միայն կը հանդիպինք Ընկերութեանս յիշատակութեան: Նպատակն եղած է՝* եկեղեցւոյ եւ վարժարանին օգնել: *Ունեցած է* 100 *ոսկի դրամագլուխ:*

## ՍԻՒՐՄԷՆԷ

1· ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Նախկին* Համամաշէնի *Հայութեան մնացորդացն է* Սիւրմէնէի *բնակչութիւնը՝ գաղթած Տրապիզոնէն* 10 *ժամ հեռու այդ վայրը: «Իրենց արդէն ունեցած վարժարանը աւելի եւս բարեկարգելու եւ տեւական ընելու համար* Ընկերութիւն *մը կազմած են, որուն բաժանորդ գրուած են նաեւ բաւական թուով* Տիկնայք» *կը գրէ թղթակից մը* 1879 *Սեպտ.* 13*ին* (Մասիս, *Կ. Պ.* 1879 *Թ.* 2435): *Ընկերութեան անունը չէ յիշուած:*

## ԱՄԱՍԻԱ

1· ՊԱՐԹԵՒԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1852—53)

*Ամասիոյ* հնագոյն *Մշակութ. Ընկերութիւնը կը կոչուի* «Պարթեւական Ընկերութիւն», *որ հիմնուած է հաւանօրէն* 1852*ի վերջերը կամ* 1853*ի Յունուարին: Կը յիշուի*

1853 *Մարտ 3ին Ամասիայէն գրուած բազմաստորագիր նամակի մը մէջ հետեւեալ ձեւով.* «*Մարզուանու վիճակին բարեխնամ Առաջնորդ* Գեր. Տ. Գէորգ Սրբ. Եպիսկոպոսը... *երկար ժամանակէ ի վեր կ'աշխատէր* Ամասիոյ մէջ ուսումնասիրական Ընկերութիւն մը հաստատելու... *երկար ժամանակ աշխատելէն ետք, վերջապէս յաջողեցաւ* Պարթեւական *անուամբ* Ընկերութիւն *մը հաստատելու* Ամասիոյ մէջ: *Առ այժմ* 23,500 *ղուռուշի մուրհակ ստորագրել տըւաւ, որուն հարիւրին տասներկու ղուռուշ տարեկան շահ պիտի վճարենք եւ սանկով* 2880 *ղուռուշի չափ տարեկան եկամուտ պատրաստեց...*» (Մասիս, *Կ. Պոլիս*, 1853 *Թ.* 62):

1853*ին Ամասիոյ մէջ երեք Թաղային դպրոցներ կային եւ միտք կար նաեւ* Ուսումնարան *մը բանալ* (Մասիս, *անդ*): *Անշուշտ նորակազմ Ընկերութիւնը այդ դպրոցներուն նպաստելու համար հիմնուած էր:*

*Ընկերութիւնս կը յիշէ «սկսնակ բանասէր»* «Պարթեւեան» *ձեւով 1898ին, աւելցնելով թէ Ընկերութեան նպատակն էր* «Ուսումնարան մը բանալ» (Արեւելք, *Կ. Պ.* 1898 *Թ.* 3854): *Բացա՞ծ է Ուսումնարանը:*
— *Չենք գտներ որեւէ լուսաբանութիւն:* 1871*ին Ամասիոյ մէջ կար* «Ս. Ներսէսեան Ուսումնարան» *մը* (*Տե՛ս* Արարատ, *Կ. Պ.* 1871 *Թ.* 37), *որ չենք կարծեր թէ կապ ունենայ «Պարթեւեան Ընկերութեան» հետ:*

## 2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1866)

*Հիմնուած է* 1866 *Մայիս* 25*էն* «երկու ամիս յառաջ» (Փունջ, Կ. Պ. 1866 *Թ.* 126, *Յունիս* 18) : *Ուրեմն հիմնումի Թուականն է* 1866 Մարտ : *Ահա այս մասին կարեւոր Թըղ-Թակցութիւն մը* Մարզուանէն 1866 *Մայիս* 25 *Թուականով, անստորագիր.* «Երկու ամիս յառաջ Ուսումնասիրաց անուն Ընկերութիւն *մը կազմուեցաւ, որուն նպատակն է առ այժմ* Ամասիոյ Սավայիտ *Թաղի* Ս. Ներսէսեան վարժարանին *նպաստել եւ* թանգարան *մը հաստատել : Ընկերութիւնը ունի հիմա վաթսուն եւ հինգ անդամ ուսումնասէր եւ երիտասարդական մասէ բաղկացեալ. իւր կարեալ Թիւը մինչեւ* 100 *պիտի հասնի, որոնք պատրաստ են Ընկերութեան հաստատուած օրէն կանխիկ հինգ դուրուշ վճարել եւ ապա շաբաթը* 20 *կամ* 40 *փարայ շարունակ : Այս կերպով հաւաքուած դրամը տարի մը շարունակ պիտի շահեցնէ եւ այնուհետեւ իր որոշեալ նպատակին պիտի ծառայեցնէ : Առ այժմ* 2000 *դուրուշէն աւելի դրամ ունեցաւ եւ Պոլիս ղրկեց վաճառք առնել ու յԱմասիա ղրկելու եւ ծախուելու համար Ընկերութեան անդամոց կամ ուրիշ ուզողներու : Դուրսէն բաւական նուիրատուք գտնուեցան եւ կը գտնուին :*

*Ընկերութիւնը* հինգ Հոգաբարձու ունի, *որք են ուսումնասէր եւ ազգասէր երիտասարդներ : Արդէն սկսած են իրենց պաշտօնը վարել : Ասոնք պարտաւոր են* երեք ամիսը

անգամ մը Ընկերութեան բոլոր անդամները ի ժողով հրաւիրել եւ հաշիւը տալու :

Ընկերութեան անդամոց մէջ հիմա այնպիսի զարմանալի սէր մը կայ որ չեմ կրնար պատմել : Կարծես թէ Ընկերութեան խումբը Ամասիոյ մէջ որոշեալ մաս մ'է յառաջդիմութեան ջերմ սիրով վառեալ : *Ամէնքն ալ Ընկերութեան յառաջդիմութեան համար կ'աշխատին : Ասոնց մէջ վարժարանին եւ Ընկերութեան Հոգաբարձուաց փոյթն ու խնամքը առանձին նշանակութեան արժանի է որով կը յուսամ թէ յառաջ պիտի երթայ եւ գլխաւորապէս Ս. Առաջնորդին այս մասին աշխատութիւն ու սիրոյ յորդորներն ապարդիւն չպիտի մնան»* (Փունջ, *անդ*) :

*Ինչպէս կը տեսնուի՝ «Ուսումնասիրաց Ընկերութիւն»ը պաշտպանն է* «Ս. Ներսէսեան վարժարանի» : *Ընկերութիւնը յաջողած է իր պաշտպանեալ վարժարանի* մակարդակը բարձրացնել *յաջորդ տարիներուն, որով 1871ին «Ս. Ներսէսեան»ը դարձած է* «Ուսումնարան» : *Պոլսոյ* Արարատ *թերթը* (1871 *թ.* 37) *առթիւ մը կը յիշատակէ.* «Ս. Ներսէսեան Ուսումնարան» :

### 3. ՆԵՐՍԷՍԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867—69)

*Կը յիշուի* 1870*ին՝ իբրեւ* նիւթապէս հարուստ Ընկերութիւն մը (*Հմմտ.* Մանզումէի էֆքեար, *Կ. Պ.* 1870 *թ.* 1429), *որ* 1870*ին* նորակազմ *չի կրնար ըլլալ : Ընկերութեանս մասին չենք գտներ ուրիշ տեղեկութիւն :*

*Յայտնի չէ թէ ի՞նչ կապ ունէր «Ս· Ներսէսեան Ուսումնարանին» հետ։ Իր ծագումը հաւանօրէն* 1867—9*ի միջոցին է։*

4· ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868—70)

*Ամասիոյ* Սավատիա (*Սավայիտ*) *թաղին մէջ հիմնուած է։ Կը յիշուի* լոկ անունով, 1872*ին, սա ձեւով·* «Սանուց Ընկերութիւն», *որ* 1872 *Փետրուարին միանալով* «Ներսէսեան» *եւ*«Նպաստամատոյց» *Ընկերութիւններուն հետ՝ կը կազմեն* «Միացեալ Ընկերութիւն» *մը* (*Տե՛ս* Փող, *Կ· Պոլիս* 1872 *Թ·* 14)։

*Նկատի առնելով որ* Սավատիա թաղին *մէջ կազմուած է «Սանուց Ընկերութիւնը՝» պարզ է որ «Ս· Ներսէսեան Ուսումնարան»ի աշակերտները եղած պիտի ըլլան կազմողները։ Այս մասին չունինք որեւէ լուսաբանութիւն։*

5· ՆՊԱՍՏԱՄԱՏՈՅՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868—70)

*Յիշուած չէ իր* հիմնումի տարին։ *Իր մասին լոկ յիշատակութիւն մը կայ* 1872 *Փետրուարէն, երբ* միացած *«Ներսէսեան» եւ «Սանուց» Ընկերութեանց հետ՝ կազմած են* «Միացեալ Ընկերութիւն» *մը* (Փող, 1872 *Թ·* 14)։ *Ժամանակակից մը՝ ակնարկելով այս երեք Ընկերութիւնները՝ կը գրէ որ* «թագուն եւ լռիկ կը գործեն» (Փունջ, 1872 *Թ·* 716), *որմէ յայտնի կ՚ըլլայ թէ ինչո՛ւ*

իրենց մասին աւելի լայն ծանօթութիւն չեն տուած ։

### 6· ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868—70)

Ծագումը անծանօթ ։ Իր անուան կը հանդիպինք ճիշդ ա՛յն ատեն — 1872 — երբ կը միանայ «Մամիկոնեան» եւ «Անձնուէր» Ընկերութիւններուն հետ (Փող, 1872 Թ. 14) ։

Կազմուած է Ս․ Նիկողայոս թաղին մէջ (Անդ) ։

### 7· ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868—70)

Հիմնումի տարիի մասին որեւէ ծանօթութիւն չենք գտներ ։ Մէկ անգամ միայն կը յիշուի եւ այն՝ 1872ին՝ երբ կը միանայ ուրիշ Ընկերութիւններու հետ (Փող, անդ), հետեւաբար հարկ է ընդունիլ թէ առնուազն 1868—70ին եղած ըլլալու է իր ծագումը ։ Բնականաբար թէ՛ այս եւ թէ նախորդները կրնան աւելի բարձր հնութիւն ալ ունենալ ։

### 8· ԹԱՏԵՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1870—71)

Կը յիշուի 1871 Հոկտեմբերին եւ կու տայ իր առաջին ներկայացումը 1871 Նոյեմբեր 18ին «ի նորահաստատ թատրոն Ներսիսեան», այսինքն՝ Ներսիսեան Ուսումնարանի սրահին մէջ, ուր ներկայ կ՚ըլլան 400—500 հոգի (Մանզումէի էֆքեար, 1871 Թ. 1799 ։ Հմմտ. նաեւ Արարատ, Կ. Պ. 1871 Թ. 37) ։

### 9· ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

Կազմուած է Ս· Նիկողայոս Թաղին մէջ 1871 Յունուար 1ին։ 1872ի սկիզբը միացած է «Արամեան» եւ «Մամիկոնեան» Ընկերութեանց հետ (Փող, անդ)։ 1871ի վերջերը իր մասին կը գրեն· «Օր ըստ օրէ յառաջադիմելու վրայ է» (Արարատ, 1871 Թ· 37)։ 1871 Փետրուար 19ին ունի «Արամեան» անունով դասընթացք մը մեծերու, ուր կարդալ գրել կը սորվեցուի։ Նոյնպէս նաեւ կիրակնօրեայ Ընթերցարան մը ժողովուրդին համար, ուր տեղի կ'ունենան նաեւ ճառախօսութիւններ (Հայրենիք, Կ· Պ· 1871 Թ· 37)։

### 10· ՇԱՀԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

Ցիշատակութիւն կ'ըլլայ 1871ին վերջերը· հիմնուած է Ս· Նիկողայոսի Թաղին մէջ (Արարատ, 1871 Թ· 37)։ Հիմնադիր անդամներն են· Մինաս Գէորգեան, Քրիստոստուր Մատթէոսեան, Թորոս Սատէթեան, Մ· Նիկողոս խաչերեան (Փունջ, 1872 Թիւ 7·6)։

### 11· ՄԻԱԿԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1876)

1876 Սեպտեմբերին նոր կազմուած Ընկերութիւն մըն է· հիմնադիրներն են «Հայ երիտասարդներ՝ դպրոց մը հաստատելու նպատակով» (Մանզ· էֆքեար, 1876 Թիւ 3259)։ Ուրիշ տեղ չի յիշուիր։

## 12. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1876—77)

*Առաջին անգամ եւ լոկ անունով կը յի-
շուի* 1878*ին* (Լոյս, *Կ. Պ.* 1876 *Թ.* 76) :

## 13. ՀԱՄԱԼՍԱՐԱՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

*Հիմնուած է* 1878 *Յունիս* 25*ին եւ* 1880*ին* *ունէր* 340 *անդամ* (Մասիս, 1880 *Թ.* 2618) : *Հիմնադիրները երեք հոգի եղած են : Ընկերութիւնս ունի իր* Կանոնագրութիւնը, *բաղկացած* 12 *Յօդուածէ եւ հրատարակուած* Թէրճէմանը էֆքեարի *մէջ* (1878 *Թ.* 356) : *Ահա քանի մը Յօդուած.*

*Յօդ.* 1. *Ընկերութեանս* նպատակն է մի օրինաւոր կալուած պատրաստել եօթը տարիէն եւ անոր եկամուտին արդիւնքով միշտ երկու կամ աւելի աշակերտ ունենալ Եւրոպա :

*Յօդ.* 2. Չափահաս արհեստաւորաց համար կիրակնօրեայ դասախօսութիւններ ընել :

*Յօդ.* 3. *Ընկերութեան անդամակցիլ ուզողը չարաթական ողջ* 40 *բարա պիտի վճարէ* :

*Յօդ.* 6. *Ընկերութիւնը կը բաղկանայ երկու ժողովներէ, Ա. Ընդհանուր ժողով եւ Բ. Գործադիր ժողով* (Թէրճ. էֆքեար, *Կ. Պ.* 1878 *Թ.* 353 *եւ* 356 : — Հայրենիք, 1879 *Թ.* 503) :

1880*ին Ընկերութեան Վարչական Մարմինը կը կազմէին.*

| | |
|---|---|
| *Գրիգոր Զատիկեան* | *Փոխ–Ատենապետ* |
| *Սիմէոն Ց. Պախթիարեան* | *Անդամ* |
| *Կարապետ Մ. Մարաճեան* | *Անդամ* |
| *Մ. Թադէոս Դարբինեան* | *Անդամ* |
| *Յովհաննէս Իմիցեան* | *Անդամ* |
| *Յովհաննէս Դաղլճեան* | *Անդամ* |
| *Բարթուղէկ Ղուկասեան* | *Անդամ* |
| *Կարապետ Պարանագործ* | *Անդամ* |

*(Նամակ Ամասիայէն)*

1878*ին Սեբաստիոյ մէջ ալ հիմնուած է* «Համալսարանական Ընկերութիւն» *մը* :

13ա· ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՀՈԳԵՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

*Հիմնած են* Բողոքական *երիտասարդներ՝* 1884*էն* «տարիներ առաջ» : *Նպատակն է* «*օգնել կարօտելոց եւ աշխատիլ ուսման տարածման համար*» : *Շաբաթական անդամավճարն է* 10 *փող* : *Երկու աղքատ տղայ կը ղրկէ* 1884*ին Մարզուանի բարձրագոյն վարժարանը* : 1884*ին Ընկերութեան գրագիրն է* Յովհաննէս Յ· Մանիսաճեան (Աւետաբեր, *Կ· Պ·* 1884 *Թ·* 9) :

14· ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1888)

*Կազմուած է* 1888*ի սկիզբները եւ չուտով ունեցած* 30 *անդամ* : *Ունեցած է* Կանոնագիր, *զոր չենք տեսած* : Նպատակն *եղած*

է․ «Ամասիոյ երկսեռ մանկտւոյն համար դպրոցներ բանալ»։ 1888 *Յունիս 1ին բացած է* «Նախակրթարան *մը, ուր կը յաճախեն վաթսունի չափ թոշակաւոր եւ անթոշակ աշակերտներ․․․ վարժարանի ուսման ընթացքն է* չորս տարի» (Արեւելք, *Կ․ Պ․* 1889 *թ․* 1664։ — *Տե՛ս նաեւ* Ամասիա, 1911, *էջ* 190)։

*Ընկերութեան հիմնադիրներէն կը յիշուին* Կարապետ Սարրաֆեան, Յարութիւն Մէջէնեան, Կարապետ Փափազեան, Յակոբ Սիմոնեան (Արեւելք, *անդ*։ — Սուրհանդակ, Կ․ Պ․ 1903 *թ․* 1261)։

Արեւելեան Մամուլ (*Իզմիր* 1892, *էջ* 226) *կը գրէ որ Ընկերութիւնը չորս տարի կրցած է կանգուն պահել իր բացած վարժարանը։ Ընկերութեան տարեկան բաժնեգինն է մէկ օսմ․ ոսկի*։ «Իւրաքանչիւր անդամ անձնական պարտամուրհակաւ պարտաւորուած է մինչ չորս տարի ապահովել իւր պարտքը առ վարժարանն» (*Անդ*, *էջ* 227)։

1891ին *Ընկերութեան Վարչութիւնը կը կազմեն՝* Ա․ Յ․ Մէչէնեան (*Ատենապետ*), Ա․ Մարտիկեան (*Ատենադպիր*)։ *Կը ջանան* «Թանգարան» (*Գրադարան*) *մ՚ունենալ* (Փունջ, 1891 *թ․* 2247)։

1895*ին դեռ կանգուն էր Ընկերութիւնը եւ կը գործէր* (Հայրենիք, 1895 *թ․* 1104։ — *Տե՛ս* Սուրհանդակ, *անդ*)։

15. ՀԱՅ ԿԱՆԱՆՑ ԲԱՐԵՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Կազմուած է Սահմանադրութեան յաջորդ օրերուն եւ չուտով ունեցած* 200 *անդամ: Իր վարչութիւնը կը կազմեն* 1908*ին.*

| | |
|---|---|
| *Տողակաթ Թիւթիւնճեան* | *Ատենապետ* |
| *Հայկուհի Հապէշեան* | *Ատենադպիր* |

Նպատակն է. «Հայ կնոջ իմացական եւ բարոյական զարգացման սատարել»: *Կը ջանայ աղջկանց յատուկ* գեղարուեստական վարժարան մը *բանալ: Վարժարանը պիտի բացուի* 1909 *Մարտին, ուր* 60 *աշակերտուհիներ* ձեռարուեստի ամէն կարգի ճիւղերու պիտի հետեւին մասնագէտներու առաջնորդութեամբ: *Ամասիոյ Հայ հասարակութիւնը մեծ խնդութեամբ կ'ողջունէ այս ձեռնարկը* (Ժամանակ, Կ. Պ. 1909 *Թ.* 85): *Վարժարանը կը բացուի, բայց* 1910*ին տարաձայնութիւններ կան բացուած վարժարանի մասին* (Ազատամարտ, Կ. Պ. 1910 *Թ.* 268, 282): «Քաջունի Գեղարուեստանոց» *վարժարանը* 1912*ին* 20 *Շրջանաւարտներ կու տայ* (Ամասիա, 1912, *էջ* 195—6):

16. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1911)

Գ. Վարդապետեան *գրած է* «Տեղագրական *աշխարհագրութիւն* Ամասիոյ» *իբր դասագիրք* 1911—12*ի շրջանին համար՝ գործածուելի* Գ. Կարգին (*դասարանին*) *մէջ: Այդ գիրքը գրուած է* 1911*ին: Արդ, Վարդապետեան այդ գրքոյկին մէջ կը գրէ. «Բա–*

բեգործական հաստատութիւններէն կ՚արժէ յիշել Նորակազմ Ընկերութեան մը նախաձեռնութիւնով բացուած «Ազգ. Հիւանդանոցը». որ մեծ դեր ունի կատարելիք եւ պիտի կատարէ իր յարատեւութեամբ, եթէ ոչ ներկայիս՝ գէթ ապագային էապէս» (Գ. Վարդապետեան, Տեղագրական աշխարհագրութիւն Ամասիոյ. Ամասիա 1912, էջ 9): Վարդապետեան չի տար Ընկերութեան անունը, ինչպէս չէ ճշդած հիմնումի թուականը եւ ուրիշ պարագաներ:

Դժբախտաբար աւելի յստակ ծանօթութիւն մը չէ հաղորդած Ամասիոյ մէջ լոյս տեսնող ժամանակակից հայ թերթը՝ «Ամասիա», որ կը գրէ 1911 Հոկտ. 15ին. «Քանի մը բարեսէր ազգայիններու նախաձեռնութեամբ եւ 250—300 ազգայիններու անդամակցութեամբ կազմուեցաւ Ազգ. Հիւանդանոցի վարչութիւն մը, որոնց բարի նպատակն է տեղւոյս մէջ Սեբաստիոյ նման Հիւանդանոց մը բանալով՝ ծառայել իրենց տառապեալ ազգակիցներուն» (Ամասիա, 1911 թ. 1, էջ 11): Հոս՝ կազմուեցաւ «Ազգային Հիւանդանոցի վարչութիւն» մը բացատրութիւնը ուրիշ բան չէ, եթէ ոչ «Ազգ. Հիւանդանոցի Ընկերութիւն» մը: Զարմանալիօրէն «Ամասիա» խոյս տուած է «Ընկերութիւն» բառը գործածելէ: 250—300 անդամակցութիւն ունեցողը «վարչութի՞ւն» կ՚ըլլայ թէ «Ընկերութիւն» կամ «Միութիւն», եւ այլն: Յայտնի է որ Ընկերութիւն

մրն է կազմուած, *ինչպէս յիշեց Վարդապետեան*:

*Նոյն թերթը* 1911 *Նոյեմբեր* 30*ին ալ կը գրէ*, *«Ազգ. Հիւանդանոց» վերնագրի տակ.* «Նորակազմ Ազգ. Հիւանդանոցի վարչութիւնը *հիւանդանոցի համար վարձած է* Պարսամ աղա Մանիսանեանի *օդասուն ու նպատակայարմար տունը»* (Ամասիա, 1911, *էջ* 64):

*Հիւանդանոցի Ընկերութեան* 5 *ոսկի կտակած է* Տիգրան Ճիվանեան. *Նուիրատուութիւններ եղած են նաեւ ամուսնութիւններու եւ անուան տօնախմբութիւններու առթիւ* (Ամասիա, *անդ՝ էջ* 80):

1912 *Յունուար* 1*էն սկսած* բացուած է Հիւանդանոցը *եւ սկսած են հիւանդներու դարմանումները* (Ամասիա, 1912, *էջ* 7):

17. ԿԱՆԱՆՑ ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1912)

*Հիմնուած է* 1912*ին.* 1914*ին կու տայ դեղարուեստական հանդէսներ* (Ժամանակ, *Կ. Պ.* 1914 *Թ.* 1724: — Հողդար, *Սեբաստիա* 1914 *Թ.* 47): — *Անշուշտ նոյն Ընկերութիւնն է մերթ կոչուած նաեւ «Կանանց* Դպրոցասիրաց» (Ժամանակ, 1914 *Թ.* 1730):

18. ԱՐԱՆՑ ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1912)

*Կազմուած է «Կանանց Դպրոցասիրաց»ի հետ* 1912*ին, բայց* 1914*ին դեռ «անգործ» է* (Ժամանակ, 1914 *Թ.* 1730 *եւ* 1752):

## 19. «ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ» ԱԿՈՒՄԲ (1912)

*Օրուան թերթը՝* «Ամասիա՝» *առանց ոեւէ լուսաբանութեան կամ նախադէս տրուած տեղեկութեան մը՝ կը գրէ* 1912 *Օգոստ.* 30*ին.* «*Ամսոյս* 22*ին Ս. Դ. Հնչ. Գլխալին մէջ* «Հայրենասիրաց» Ակումբի *կողմէն ներկայացուեցաւ* Միհրդատը, *Հայրենասիրական կտոր մը, որը լաւ տպաւորութիւն թողուց*» (Ամասիա, 1912, *էջ* 336)։

*Ուրիշ ծանօթութիւն չենք գտներ։*

## 20. ԾՐՁԱՆԱՒԱՐՏԻՑ ԱԿՈՒՄԲ (1913—14)

*Կազմած են* Իբրանոսեան Առեւտրական վարժարանի *շրջանաւարտները։ Ունին իրենց* Ծրագիր—Կանոնագիրը։ 1914*ին կու տայ ներկայացում։ Կը բանայ* Ընթերցարան *մը* (Ժամանակ, 1914 *թ.* 1791)։

## 21. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ (1914)

*Կազմուած կ՚երեւայ* 1914*ին, զի* 1915*ին է որ առաջին անգամ իր յիշատակութիւնը կ՚ըլլայ։* 1915*ի սկիզբը ժիր գործունէութիւն ունի եւ ամէն տեղ օգնութիւն կը փութացնէ* (Ժամանակ, 1915 *թ.* 2064)։ — 1919*ի սկիզ-բը* վերակազմուած՝ «*գովելի ջանքերով կը շարունակէ իր նպատակները տալ թէ՛ տեղւս (Ամասիոյ) աղքատներուն եւ թէ* անցնող տարագրեալներուն» (Ժամանակ, 1919 *թ.* 3505)։

22. «ՓՈՔՐ ՀԱՅՔ» ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Հիմնուած է* Պոլիս 1918ի *վերջը՝ Ամասիացիներէ, Մարզուանցիներէ, Եւդոկիացիներէ, եւ այլն «իբր Կարմիր Խաչի օժանդակ»* (Ժամանակ, 1919 *Թ.* 3418, 3455)։

23. ԲԱՐԵՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1919)

*Հիմնուած է* Նիւ Եորք (*Ամերիկա*) 1919 *Յունիս* 1*ին՝ «երկրի անտէր կարօտեալներու օգնութիւն» հասցնելու համար, Ատենապետն է Ա. Յ. Մանխասճեան, Ատենադպիրը՝ Ճ. Տէօվլէթեան, Գանձապետ՝ Յ. Յակոբեան* (Հայրենիք, *Բոստոն* 1919 *Թ.* 2167)։

24. ԱՄԱՍԻՈՅ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919—20)

*Կազմուած է* Պոլիս 1919—20ին (Ժողովուրդի Ձայնը, *Կ. Պ.* 1921 *Թ.* 810։ — *Թէոդիկ, Ամէնուն Տարեցոյցը* 1921, *էջ* 307)։

*Միութիւնը ճիւղ մը ունեցած է* Մարսէյլ 1926—7*ին*։ 1929*ին ասոր Վարչութիւնը կը կազմէին. Հաճի Մ. Ալեանաքեան, Յ. Պապայեան, Ս. Ալեանաքեան, Ղ. Մարկոսեան, Ն. Թումայեան, Լ. Քէլէչեան* (Յառաջ, 1929 *Թ.* 877)։

25. ԻՐԵՐՕԳՆՈՒԹԵԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1934)

Մարսէյլի *մէջ հիմնուած է. կը տեւէ մինչեւ* 1939*ի պատերազմը. կը վերակազ–*

*մուտ* 1954*ին. Նպատակն է՝* «Վառ պահել ազգային դիմագիծը, տոկալ եւ մեր ազգ. սրբութիւնները փոխանցել նորահաս սերունդին» (Յառաջ, *Փարիզ* 1955 *թ.* 7557)։

## ՍԻՄ ՀԱՃԻ ԳԻՒՂ

### 1. …ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860)

*Ամասիոյ* Հաճի Գիւղացիք 1860*ին Ընկերութիւն մը հիմնած են* Կ. Պոլսոյ *մէջ, որ* 1873*ին տակաւին կանգուն էր «եւ կը դիմէր իր* նպատակին, *որ էր Գիւղին վարժարանին համար հաստատուն եկամուտ հայթայթել։ Վարժարանն այժմ* (1873*ին*) *այս Ընկերութեան չնորհիւ քանի մը կալուածոց տէր եղած է ի* Պոլիս» (Փունջ, Կ. Պ. 1873 *թ.* 783։ 1875 *թ.* 1052։

*Դժբախտաբար չէ յիշուած Ընկերութեան* անունը։

### 2. …ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873)

*Հիմնուած է* 1873*ին սկիզբը։ Անդամական բաժինն է երկու հարիւր ղուրուշ։ Իսկ իր Նպատա՞կը՝ «Առեւտրական չահաւոր գործառնութիւններ ընել ու հարկ եղած ատեն չափաւոր տոկոսով փոխ տալ Ընկերութեան անդամ հայրենակցաց»* (Փունջ, *անդ*)։

*Այս Ընկերութեան անունը* դիտմամբ չէ յիշուած։

## ԶՈՐՈՒՄ (Գիւղաքաղաք)

### 1. ԱԶԱՏՈՐԴԻ ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (...1911)

*Ամասիոյ շրջանակէն* Զորումի *մէջ հիմնուած է այս Միութիւնը, որուն հիմնումի թուականը եւ այլ պարագաներ անծանօթ են մեզ: Ընկերութեան անուան կը ծանօթանանք Մարզուանի* «Բողբոջ»*էն* (1911, *էջ* 159), *որուն մէջ* քայլերգ *մը ձօնած է Միութեան՝* Մ. Վարժապետեան, *սա վերնագրով.* — «Զորումի Հայոց վարժարանի «Ազատորդի Ուսանողական Միութեան» քայլերգը»:

## ՄԱՐԶՈՒԱՆ

### 1. ԱՄԵՆԱՅՆ ՍՐԲՈՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1847)

*Հիմնուած է* 1847 *Օգոստոս* 31*ին: Հիմնադիրն է* Մարզուանի *Առաջնորդ* Յակոբոս Արքեպ. Սերոբեան, *որ* 1847 *Օգոստոս* 31*ին Զարխափան Ս. Աստուածածին վանքին մէջ ճաշկերոյթ մը տալով Մարզուանի հայ իշխաններուն՝ «այն հանդէսին մէջ յորդորական խօսքերով գտնուողներուն սիրտը ազգասիրական եռանդով բորբոքելով՝* քաղաքին տղայքը կրթելու համար *մէկ նոր* Ընկերութիւն *մը հաստատեց* Ամենայն Սրբոց *անունով: Ընկերութեան վերակացու դրաւ* Դանիէլեան Յովհաննէս *աղայն Մարզուանցի ... ասոր ալ հինգ օգնական տուաւ, որ են* Կիւլպէկեան Մահտեսի Կարապետ աղայն, Մահտ. Աբրահամ աղայն, Արապեան Մահտ.

Մկրտիչ աղայն, Աժտէրեան Մահտ. Մանուկ աղայն, Խազանճեան Մահտ. Թադէոս աղայն: *Եւ Ընկերութեան գանձապետութիւնն ալ յանձնեց վերոյիշեալ Կիւլպէկեան Մահտ. Կարապետ աղային... դպրատան Տեսչութեան գործը յանձնեց Հաճի դիւղցի Մատթէոս շնորհ. Վարդապետին»* (Հայաստան, *Կ. Պ.* 1847 *Թ.* 68):

## 2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867)

*Կը յիշուի* 1872 *Յունիս* 2*ին. — «Մարզուանու մէջ* Ուսումնասիրական *անուամբ* Ընկերութիւն *մը հաստատուած էր ուսումնասէր եւ ազգասէր անձերէ բաղկացեալ, որոնց նպատակն էր* տեղւոյն երկսեռ վարժարանաց նպաստել, *սակայն ... Եղեսեանի ատթիւ ... խանգարուեր էր. այժմ ... Ընկերութիւնը վերստին սկսաւ շարունակուիլ ... բազմաթիւ անձինք ... կ'անդամակցին...»* (Փող, *Կ. Պ.* 1872 *Թ.* 94): *Թղթակիցը, որ* Ամասիայէն *կը գրէ՝ քիչ վարը կու տայ կոուան մը Ընկերութեան* 1867*ին հիմնուած ըլլալուն. —* «...սոյն հինգ տարուան մէջ մեծամեծս պիտի յառաջանար», *եթէ հիմնուելէ վերջ արգելքի չհանդիպէր* (*Անդ*):

## 3. ... ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

1871 *Հոկտ.* 22*ին Մարզուանէն գրուած նամակ մը կ'իմացնէ թէ* Գրիգոր Պատուելի Թեփիկեան, *Ս. Սահակեան վարժարանի*

*Տնօրէն-ուսուցիչը մեծ ջանք կը թափէր կրթական մարզին մէջ, որուն գործերը յիշելէ յետոյ՝ կ'աւելցնէ թէ «շնորհիւ* նորակազմ Ընկերութեան *Կիւրակի օրուան* Ընթերցարան *մըն ալ պիտի բանայ»*: (Մանզումէի Էֆքեար, *Կ. Պ.* 1871 *Թ.* 1763):

*Ընկերութեան անունը* չի տրուիր: *Ուրիշ տեղէ ալ ծանօթութիւն մը չենք գտած:*

4. ԳՐԻԳՈՐԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873)

*Կազմուած է* 1873*ին նախաձեռնութեամբ* Գրիգոր Թեփիկեանի: *Իր նպատակը՝* «մանչ տղոց վարժարանին նպաստել» (Փունջ, *Կ. Պ.* 1875 *Թ.* 958): 1875*ին ունէր* 70 *անդամ* (*Անդ*): *Ուրիշ ոչ մէկ ծանօթութիւն:*

5. ԱԳԱՊԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

*Նախաձեռնութեամբ վերոյիշեալ Գ. Թեփիկեանի հիմնած են «քանի մը ազնուազարմ Տիկնայք»* (Փունջ, 1876 *Թ.* 1092): *Նպատակն է՝ «օգնել իգական վարժարանին»* (Փունջ, 1875, *Թ.* 958): 1875*ին ունէր* 100 *անդամուհիներ: Իսկ* 1876*ին հաւաքած էր* 8000 *ղուրուշ եւ աղջկանց վարժարանի Տեսչութիւնը յանձնած էր «վաղեմի վարժուհի* Տիկին Զարուհի Կ. Տ. Յովակիմեանցին (Փունջ, 1876 *Թ.* 1092):

*Աղջկանց այս վարժարանը* 1875*ին կոչուած է* «Ագապեան վարժարան» *իր պաշտպան Ընկերութեան անունով* (Արեւելք, *Կ. Պ.* 1885 *Թ.* 320): «Վ.» *ստորագրութեամբ*

Թղթակից մը 1885ին կը գրէ որ վարժարանը իր նախկին փայլը կորսնցուցած է ։ Օտարացած էր նաեւ Ընկերութիւնը (Տե՛ս Արեւելք, անդ.) ։

1878ին Գարեգին Վ. Սրուանձտեանց տակաւին կանգուն կը գտնէր «Ազգապեան Ընկերութիւն»ը, որ Պոլսէն վարժուհի մը տանելով՝ նոր աշխոյժ կու տար իր գործունէութեան (Թորոս Աղբար, Ա., էջ 20) ։

6. ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԵԱՆ ՋԵՌՆՏՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ
(1874)

Կազմած են Մարզուանի Բողոք. Հայերը 1874 Յունուար 1ին ։ Ունի 7 Յօդուածէ բաղկացած կանոնագիր մը, զոր հրատարակած է Պոլսոյ Դիտակ ։ Ահա՛ Ընկերութեան Նպատակը. «Աւետարանական Հայոց հասարակ դպրոցի աղքատ աշակերտաց օգնել անխտիր» (Յօդ. 2) ։ Տարաթական անդամավճարն է 5 փարա (Յօդ. 3) ։ Ընկերութեան Տնօրէնը Գանձապետը եւ Ատենադպիրն է Ա. Յովհաննէս Թորոսեան (Դիտակ, Կ. Պ. 1874 Թ. 131) ։

7. ԿԻՐԱԿՆՕՐԵԱՑ ՈՒՍՄԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ
(1876—78)

1878ին կը յիշուի միայն Պոլսոյ Լոյս (1878 Թ. 76) թերթէն ։ Զարմանալի է որ անտեղեակ մնացած են ժամանակակից միւս հայ թերթերը, օրինակ՝ Մասիս, Հայրենիք, Մանզ. էֆքեար ։ Նոյնպէս չի յիշեր Գ. Վ. Սրուանձտեանց իր «Թորոս Աղբարին» մէջ ։

## 8· ՊԱՇՏՊԱՆ ԿՐՕՆԻ ԵՒ ԱԶԳՈՒԹԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

*Հիմնադիրն է* Մուշեղ Վրդ· Հայկունի: *Գ· Վրդ· Սրուանձտեանց Մարզուանի մէջ կը գտնէր 1878ին այս Ընկերութիւնը, բայց չ'ըսեր թէ ե՞րբ կազմուած էր*: «Պատանեկաց եւ Երիտասարդաց *Ընկերութիւն*» *մըն էր*: «*Պատանիք ճառեր կ'արտասանէին բերնով կամ գրով, բարոյականի եւ ազգային պատմութեան վրայ, մէջ ընդ մէջ ալ երգեր երգելով*», *կը գրէ Սրուանձտեանց, որ* չէ հաւնած Ընկերութեան եւ անոր գործելակերպին, *թէպէտ կ'ըսէին տղաքը*· «*Մենք այս միջոցով առաջքը կ'առնունք մեր ժողովրդեան երկու սեռին ալ*, որ Կիրակի օրերը կ'երթան Բողոքականաց վարժարանը բան լսելու»: «*Աղէ՛կ*», *կ'առարկէ Սրուանձտեանց*, «*բայց դեռ կ'երթային եւ պիտի երթան անոնք, որ ո՛չ ձեր բանձէն եւ ոչ Բողոքականաց քարոզածէն բան մը չեն հասկընար*···»: *Սրուանձտեանց յետոյ կ'աւելցընէ*· «Խրախուսեցի այդ Ընկերութիւնը, որպէս զի բերել տան եւ ընթեռնուն ուսանելով Ազգաց պատմութիւնները, պարբերական հանդէսներ եւ լրագիրներ··· Նախնեաց մատենագրութիւնները··· Ընթերցարան մը բանան հասարակաց համար, որոյ օգուտը մեծ է» (*Թորոս Աղբար*, *Ա*··, *էջ* 17—19):

1878 *Օգոստ·* 10*ին կը գրէ Մարզուանէն* Վահան Ամբարեան· «Հայր Մուշեղ Հայկունին··· *ընդ իւր Հիմնադրեալ Նախագա-*

Հութեամբ «Պաշտպան Ազգութեան եւ Կրօնի» մականուամբ Ընկերութիւն մը հաստատած է, որու հիմնադիրներու կարգէն են Պ. Սահակ Պէկեան եւ Բարսեղ Ճահպէնտէրեան... առ այժմ Ընկերութեան բաժանորդք 550 հոգիի կը հասնին. մեն մի բաժանորդագին չաբաթը 10 փող պղինձ լինելով, որոյ արդիւնք դպրոցի աղքատիկ մանկանց թուղթ, գիրք, մելան եւ այլն մատակարարելու եւ Թանգարանիս ընտիր եւ օգտակար մատեանք գնելու պիտի ծառայէ» (Հայրենիք, Կ. Պ. 1878 Թ. 463):

Հաստատուած է 1878ի սկիզբը, ինչպէս կը գրէ խորէն խորխոռունի Մարզուանէն 1879 Մարտ 18ին թղթակցութեամբ մը, ուր կը հաւաստէ թէ Ընկերութիւնը հիմնուած է «տարիէ մը ի վեր» (Հայրենիք, 1879 Թ. 522):

9. ՀՐԱՀԱՆԳՈՒԹԻՒՆ ԿՐՕՆԻ ԵՒ ԱԶԳՈՒԹԵԱՆ (1878)

Վերոյիշեալ թղթակիցը յետոյ կ՚աւելցընէ. «Սորա ծնունդն է մօտերս հաստատուած «Հրահանգութիւն կրօնի եւ Ազգութեան» անուն Ընկերութիւնս ալ, որոյ հիմնադիր եւ դասախօս են վերոյիշեալ ուսումնասէր եւ անձնուէր պարոնայք: Այս Ընկերութիւնն եւս կը բաղկանայ 20էն աւելի ուսման կարօտ երիտասարդներէ, որք... կը հաւաքուին դպրոցիս յարկաց միոյն մէջ, ուր Հայկական եկեղեցւոյ ուղիղ օրէնքներն եւ վարդապետութիւնք Ս. Գրոց վկայու-

*թեամբ կը դաստիարակուին. անդ կ'ուսանին նաեւ Հայոց Պատմութիւն...*» (Հայրենիք, 1878 *թ.* 463):

*Կը կոչուի նաեւ* «Հրահանգիչ Ընկերութիւն (Հայրենիք, 1879 *թ.* 522): — 1880*ին* *կը սկսի* թատերական ներկայացում տալ (Մանզումէի Էֆքեար, Կ. Պ. 1880 *թ.* 4420):

*Ընկերութեանս* նպատակն *եղած է* «հրահանգել գերիտասարդս, Ազգ. ոգւով դաստիարակել զարհեստաւոր պատանիս» (Հայրենիք, 1879, *անդ*):

*Այս Ընկերութիւնն է որ Մարզուանի Արեւմտեան Հարաւային կողմը բնակող* «Հայ մաղագործաց», *այսինքն* Հայ Բոշաներուն *համար* դպրոց մը կը բանայ *եւ Բողոքականութեան երթալէ կ'ազատի անոնցմէ* 30 *տուն* (Հայրենիք, 1879, *անդ*): — *Ընկերութիւնս, որ* Մասիսէն *ալ յիշուած է* (1879 *թ.* 2503), *կը գործէր* 1882*ին* (Փունջ Կ. Պ. 1882 *թ.* 1642) *եւ* 1883*ին* (Մասիս, 1883 *թ.* 3459):

### 10. ՄԵՍՐՈՊԵԱՆ ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880—81)

Միհրան Թիւրքճեան՝ *ճամբորդութեան մ'առթիւ հանդիպելով Մարզուան՝ կը խօսի* Ս. Սահակեան վարժարանի *վրայ եւ յետոյ կ'աւելցնէ որ Սահակեանի սրահներէն մէկուն մէջ Պոլսեցի* Յովհաննէս Մոմճեան *դպրոց մը բացած է* «Մեսրոպեան» *անունով*: *Արդ, այս Մեսրոպեան դպրոց»ի սաները կազմած էին* «Մեսրոպեան Սանուց Ընկե–

բութիւն»ը, որ 1882ին ունէր Մատենադարան մը «որ ճոխացուցած են բաւական ընտիր գրքերով», կը գրէ Միհրան Քիւրքճեան (*Փունջ*, 1882 *Թ.* 1642, *Յունուար* 23)։

*Ընկերութեան հիմնումի թուական կարելի է նկատել* 1880—1։

11. ԿՐԹԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1883)

*Կազմած են Մարզուանի Հայ Բողոքականները* (Արեւելք, 1885 *Թ.* 320)։ 1885 *Յունուար* 4ին *կը գրէ Թղթակից մը Մարզուանէն. «Բողոքական—Ազգային ու սոցա երիտասարդութիւնը կազմած է* Կրթական Ընկերութիւն *մը* երկու տարիէ ի վեր... *որ կը կառավարէ* երեք դպրոցներ՝ *ծախքը բոլորովին ինքը հոգալով*» (Արեւելք, *անդ*)։

12. ԳՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1888)

*Կազմած են Մարզուանի* «Անաթօլիա Գօլէճ»*ի հայ ուսանողները, որուն մասին Մարզուանէն կը գրէ Միութեան անդամներէն* Յովսէփ Թորիկեան 1899 *Նոյեմբերին.* «Գրական Միութիւնը *շուրջ* 11—12 տարիներէ հետէ կը ծառայէ հայ ուսանողութեան՝ իրենց մայրենի լեզուին ու գրականութեան մէջ յառաջանալուն» (Արեւելք, 1899 *Թ.* 4156)։

*Միութիւնը* 1899 *Հոկտ.* 16*ին գրական հանդէսով մը կը խմբէ* Մատթէոս Մամուրեանի 50*ամեայ Յոբելեանը եւ* հեռագրով *կը շնորհաւորէ Յոբելեարը, իսկ հանդիսականները կը հանգանակեն համեստ գումար մը*

իբր նուէր: Թորիկեան կ'ընդգծէ որ «Այս Յոբելեանը նշանակելի նորութիւն մըն էր մեզ Արեւմտեան Հայերուս համար... 50 տարի վերջը տօնելու գրական շրջանի մը Յոբելեանը» (Անդ):

Վ. Միրազեանց, 1910 Դեկտ.ին յուշելով Միութեան անցեալը՝ կը տողէ. «1888ին կազմակերպուեցաւ Գոլէճիս հայ ուսանողութեան առաջին «Գրական Միութիւն»ը, որ պարբերաբար ընդհատումներէ վերջ՝ 1901ին քանի մը ուսանողներու ձերբակալման հետեւանքով վերջնականապէս փակուեցաւ: 1908... Սեպտեմբերին «Գրական Միութիւն»ը... դուրս եկաւ իր աճիւններէն ... փութով խմբագրուեցաւ կանոնագիր մը, ուր որդեգրեց կազմակերպութիւնը» : («Նոր Այգ, Մարզուան 1910 թ. 10, էջ 254: — Տե՛ս նաեւ Մարմնամարզ, Կ. Պ. 1911, էջ 158):

«Գրական Միութիւն»ը 1908—10ին ծը–նունդ կու տայ իր շրջանակին մէջ երկու ուրիշ Միութիւններու, որոնք կը կոչուին «Մարզասիրաց» եւ Երաժշտասիրաց, իսկ երբեք այս Միութիւնները — Գրական, Մարզասիրաց եւ Երաժշտասիրաց — միասին առնելով կը յորջորջուին, իբրեւ ամբողջութիւն մը՝ «Շաւարշան» («Շաւարշան Միութիւն»): «Շաւարշան»ի գրական բաժինը լոյս կը հանէ Ձեռագիր Շաբաթաթերթ մը — «ԱՐԱՔՍ» — որուն մէջ կ'երեւան գիտական, պատմական եւ վիպական ընտիր կտորներ,

«որոնք եթէ հրատարակութեան տուէին՝ պատիւ պիտի բերէին Անաթոլիայի հայ ուսանողութեան» (Նոր Այգ, անդ):

Արդ, «Ծաւարշան»՝ «հանրութեան օգտակար ըլլալու եւ ուսանողներն ալ հրապարակային գրական մարզանքի վարժեցնելու» համար կ'որոշէ «Արաքս»ը հրատարակել տպագրութեամբ: 1910 Յունուարին լոյս կը տեսնէ թերթը, սակայն նոր յորջորջումով մը — թերթը կը վերակոչուի «Նոր Այգ», որ կը դառնայ «Ծաւարշան»ի «օրգան»ը եւ մինչեւ 1914 լոյս կը տեսնէ իբրեւ Ամսաթերթ (Նոր Այգ, անդ՝ էջ 254—5: — Տե՛ս նաեւ Երկիր, Ատափազար 1910, էջ 118):

Կը կոչուի նաեւ «Ծաւարշան» Ուսանողական Միութիւն (Հայկունի, Մարզուան 1910 թ. 1, էջ 16):

## 13. ԱՂՔԱՏԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1888?)

Հիմնադրութեան թուականը անծանօթ է մեզ: Կը յիշուի 1902ին իբրեւ վաղեմի Ընկերութիւն մը: Հիմնած են Մարզուանի Հայ Կաթողիկէները: Ընկերութեան Վարչութիւնը եւ դրամագլուխը կը մնար տեղւոյն Յիսուսեաններուն ձեռքը մինչեւ 1902: Այս տարին Ընկերակցութեան դրամագլուխը՝ 90 օսմ. ոսկի՝ կը յանձնուի Հայ Կաթողիկէ եկեղեցիի Հոգաբարձութեան: Յայտնի չ'ըլլար թէ կը շարունակուի՞ Ընկերութիւնը 1902էն վերջ ալ (Տե՛ս Արեւելք, 1902 թ. 5041):

### 14. ԳՐԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԻՒՆ (1889)

Կազմուած է 1889 Հոկտեմբերին: Հիմնադիրներն են Ս. Սահակեան վարժարանի ուսանողները՝ նախաձեռնութեամբ ուսուցիչներու: Նպատակն է՝ «Թանգարան մը հաստատել» (Փունջ, 1890 թ. 2196), այսինքն՝ Գրադարան մը ունենալ: Ընկերութիւնը 1890ին 80 անդամ ունէր (Անդ):

### 15. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1898)

Գաղափարը յղացուած 1897ին՝ կը կազմուի 1898ին (Տե՛ս Փունջ 1898 թ. 2586, Յունուար 10):

### 16. ԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

Հիմնուած է 1908ին վերջերը: Իր նպատակն եղած է «Կիրակնօրեայ բեմ սարքել եւ ժողովրդային կրթութեան գործին սատարել: Տեւած է մէկ տարի, սակայն իր Լսարանը գործած է մինչեւ 1913 Յունիս (Նոր Այգ) 1913, էջ 132):

### 17. «ՀԱՅՈՐԴԻ» ԱՇԱԿԵՐՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

Կազմուած կը թուի 1910ի աշնան: Հիմնադիրներն են Ս. Սահակեան վարժարանի աշակերտները: 1910ին ունի ծրագիր՝ բեմ, դեղարուեստ, գրականութիւն եւ մարզանք մշակելու (Հայկունի, Մարզուան 1910 թ. 10, էջ 16: — Տե՛ս նաեւ Հոսանք, Գահիրէ 1912, էջ 32):

Միութիւնը ունի իր քայլերգը (Տե՛ս Բողբոջ, Մարզուան 1911, էջ 158):

## 18. ԳՐԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

Չենք գիտեր թէ վերակազմութիւն եւ չարունակութի՞ւն է 1889ի Ընկերութեան։ Ամէն պարագայի որեւէ լուսաբանութեան չենք հանդիպիր։ Այս Միութիւնը կը յիշուի 1910 Մայիս 5ին եւ իր Վարչութիւնը կը կազմեն։

Գ. Գալէնտարեան — Ատենապետ
Մ. Յ. Թլղատեան — Ատենադպիր

(Ազատամարտ․ Կ. Պ. 1910 Թ. 285)։

## 19. ԿԱՆԱՆՑ ՋԱՐԳԱՑՄԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

Կազմուած է 1910ին։ 1911 Յունուարին կու տայ ներկայացում մը՝ նախագահութեամբ Տիկ. Էլմաս Օզանեանի։ Թատերախաղն էր Լեւոն Սեդրոսեանի «Եսի մարդը» (Նոր Այգ, 1911, էջ 18)։

## 20. «ՀԱՅՈՒՀԻ» ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

Հաւանականօրէն կազմուած է 1911ին։ Հիմնուած է Մարզուանի Ս. Հոփսիմեան աղջկանց վարժարանի շրջանակին մէջ։ Մամիկոն Վարժապետեան (Բղեցի ուսուցիչ, ծն. 1866 Փետր. 25) յօրինած է Միութեան քայլերգը՝ կազմելով տնազլուխ Միութեան յորջորջումը «Հայուհի» (Տե՛ս Բողբոջ, 1912 Թ. 1, էջ 1)։

21. «ՇՈՒՇԱՆ» ՄԻՈՒԹԻՒՆ (1911—12)

*Կը յիշուի* 1914 *Յունուարին* (Բողբոջ, 1914, *էջ* 15)։ *Գտած չենք մանրամասնութիւն*։

22. ԽՆԱՅՈՂԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1912)

*Հիմնուած է* 1912 *Յունուար* 1*ին. նպատակն է*՝ «ժողովուրդը խնայողութեան վարժեցնել». *անդամավճարն է միանուագ կէս օսմ. ոսկի եւ շաբաթական*՝ 2 *դահեկան.* 1913 *Ապրիլին անդամներու թիւն էր* 80 (Բողբոջ, 1913, *էջ* 96)։

23. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ (1912—13)

Հայ Կաթողիկէ *Ընկերութիւն մըն է*։ *Կը յիշուի* 1913 *Դեկտեմբերին եւ ունի* քատերախումբ *մը եւ կը ներկայացնէ* «Ս. Գրիգոր Լուսաւորիչ եւ Տրդատ» *պատմական ողբերգութիւնը* (Բողբոջ, 1913, *էջ* 188)։

24. «ՔԱՋՈՐԴԻ» ԸՆԿԵՐԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1914)

*Հիմնուած է* 1914*ի սկիզբը*։ *Կազմուած է* Հայ Աւետարանական Ս. Մեսրոպ վարժարանի *շրջանակին մէջ* (Բողբոջ, 1914, *էջ* 64)։

25. ՀԱՅ ԱԶԳ. ՁԱՐԳԱՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

1919 *Հոկտեմբերին Մարզուանի մէջ կային* 2000 *Հայեր*, *շատեր վերադարձեր էին եւ ուրիշներ ալ հետզհետէ կը վերադառնային*։ *Անշուշտ ատոնք բոլորը Մարզուանցի*

չէին։ Ահա այդ ատեն կը կազմուի հոն «Հայ Ազգային Զարգացական Միութիւն»ը, ինչպէս կը պատմէ նամակագիր մը (Հայրենիք Օրաթերթ, Բոստոն 1919 թ. 2279)։

26. ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919—20)

Կազմուած է Զինադադարէն վերջ Պոլսոյ մէջ։ Վարչութիւնը կը կազմէին Տիգրան Պարսամեան (Ատենապետ) եւ Պ. Շահպէնտէրեան (Թէոդիկ, Ամէնուն Տարեցոյցը, 1921 էջ 307)։

Կ'ենթադրեմ որ ճիւղ մ'ալ Ամերիկա ունեցած է, թէեւ յիշատակութեան մը չեմ հանդիպած։

## ԵՆԻՉԱ ԳԻՒՂ

### 1. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870—71)

Մարզուանցի Յակոբ Թէփիկեան 1870—1ի ատենները Մարզուանէն չորս ժամ հեռու գտնուող Ենիչա Գիւղը երթալով՝ տեղւոյն Հայերը կը յորդորէ Բողոքականութեան չյարիլ. ձրի դաս կու տայ դպրոցին մէջ ու Կիրակիները Ս. Գրոց վրայ ատենախօսութիւններ կ՚ընէ եւ այդ առթիւ կը հիմնէ նաեւ Ընկերութիւն մը, որմէ հաւաքուած 1000 դահեկանով արտ մը կը գնէ եւ այդ արտէն եկած ցորենը կը յատկացնէ Գիւղի դպրոցին «եւ այսպէս հետզհետէ միջոցներ խորհելով գիւղական մանկտւոյն ազգային բարուքու–

*թեան մէջ գնելու փոյթ կը տանի»* (Փունջ, Կ. Պ. 1875 *թ.* 1041)։

*Չէ յիշուած Ընկերութեան* անունը։

⁂

## ԱՐԱԲԿԻՐ

### 1. ԲԵՐԻՈՅ ԲԱՐԵՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1866)

*Երկար փնտռտուքներէ վերջ՝ վերջապէս յաջողեցանք գտնել* անունը *եւ հիմնումի ճշգրիտ* թուականը *Արաբկիրի* հնագոյն *Ընկերութեան, որ կը կոչուի* «Բերիոյ Բարեսիրաց Ընկերութիւն»։ *Հիմնուած է* Բերիա (*Հալէպ*) 1866 *Օգոստոս* 25*ին*։

*Հիմնադիրներն են պանդուխտ Արաբկիրցիներ։ Ահա այդ մասին Պոլսոյ* Փունջ *Շաբաթաթերթին* (1866 *Նոյ.* 19) *տուած առաջին տեղեկատուութիւնը. «Արաբկիրի մեր թղթակիցը* Մ. Մանուկ աղա Բրուտեան *ի դիմաց բոլոր արաբկիրցւոց շնորհակալութեամբ կը ծանուցանէ թէ* Հալէպ Եկաւեան Սեդրոս, Բրուտեան Մ. Մամաս եւ Սաղաթելեան Կարապետ աղայք եւ հոն գտնուող արաբկիրցի մէկ քանի ուրիշ ազգայինք Ընկերութիւն մը կազմեր են՝ դուրս դրկուելիք վաճառքներէն քեռ գլուխ մէկմէկ դրուշ առնելու համար մինչեւ 12 տարի։ Գանձապետ ընտրեր են Տ. Ղազարեան Փիլիպպոս եւ Տ. Յակոբեան Յովհաննէս աղայք։ ... *Կը յուսանք թէ յիշեալ միջոցաւ հաւաքուած գումարը* Արաբկիրի ազգային օգտին համար

պիտի գործածուի» (Փունջ, *Կ. Պոլիս* 1866 *Թ.* 148)։

*Պոլսոյ* Փունջ Օրագիրը 1868, *Ապրիլ 20ին կու տայ հետեւեալ ծանօթութիւնը՝* ճշդելով *Ընկերութեան հիմնումի* թուականը։ *Հալէպէն Արաբկիրցի մը կը գրէ Պոլսոյ* Փունջին. *«Ժամանակին օրագրոյդ միջոցաւ հրատարակած ըլլալով, յուսամ թէ կը յիշէք որ* 1866 Օգոստ. 25ին Հալէպի մէջ Արապկիրցիք Ընկերութիւն *մը հաստատեցին* ի նպաստ Արապկիրի վարժարանաց։ *Ուրախութեամբ կը ծանուցանեմ թէ այս հաստատութիւնը* մինչեւ հիմա կը շարունակէ *եւ մինչեւ* 90 *օսմ. ոսկի դրամագլուխ ստացած եւ հաւատարիմ անձանց քով շահով աւանդ դրուած է։ Տասն եւ երկու տարի պայմանաժամ ունի։ Այս որոշեալ շրջանէն ետքը, մինչեւ այն ատենը գոյացած դրամագլխոյն միայն շահը Արապկիրի ազգային վարժարանաց օգտին համար պիտի գործածուի»* (Փունջ Օրագիր, Կ. Պ. 1868 *Թ.* 139[1])։

*Ընկերութեանս* անունը *կը յիշէ, տարիներ վերջ, յօդուածագիր մը, որ* «Դիտակ» *կը ստորագրէ եւ Պոլսոյ* Արեւելքի *մէջ կը խօսի Արաբկիրի* երեք հնագոյն Ընկերութիւններու վրայ, *որոնցմէ մէկն է, կ'ըսէ* «Բերիոյ Բարեսիրաց Ընկերութիւնը» (Արեւելք 1888 *Թ.* 1394)։

---

[1] Գ. Վրդ. Սրուանձտեանց (*Թորոս Աղբար, Ա., էջ* 278) *կ'ըսէ որ* Հալէպի Ընկերութիւնը 700 *ոսկիի դրամագլուխ մը կրցած էր ունենալ։*

## 2· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Կը յիշուի* 1871 *Ապրիլին սա ձեւով*. «*Արաբկիրցի մեծապատիւ* Կարապետ աղա Տ. Միքայէլեան՝ *իւր հայրենեաց* Ուսումնասիրաց թանգարանին *մէկ օրինակ Հայրենիք ընծայած է առաջին թիւէն*» (Հայրենիք, *Կ. Պոլիս* 1871 *Թ*. 45, *Ապրիլ* 20) ։

*Տարակոյս չունինք թէ հոս յիշուած* «Ուսումնասիրաց»*ը Ընկերութիւն մըն է, որ ունեցած է* «Թանգարան» *մը այսինքն՝* Գրադարան—Ընթերցարան *մը՝ ժողովուրդին ընթերցասիրութիւնը քաջալերելու համար* ։

«*Ուսումնասիրաց Ընկերութիւն*»*ը հիմնուած է* Պոլսոյ մէջ *գտնուող նժդեհ Արաբկիրցիներէ, նպատակ ունենալով իրենց հայրենի քաղաք Արաբկիրի մէջ* Թանգարան (*Գրադարան—Ընթերցարան*) *մը բանալ ։ Ընկերութիւնը յաջողած է բանալ իր* «*Թանգարանը*», *որ Ընկերութեան անունով կոչուած է* «Ուսումնասիրաց թանգարան» ։ «Դիտակ» *սորագրող թղթակից մ՚է որ կը յիշէ* Պոլսոյ *մէջ հիմնուած հին* «Ուսումնասիրաց Ընկերութիւն»*ը* (*Տե՛ս* Արեւելք 1888 *Թ*. 1394) ։

## 3· ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870—72°)

*Շատ ուշ՝* 1888*ին* «Դիտակ» *սորագրող Արաբկիրցիէ մը յիշուած է իբրեւ* վաղեմի *Ընկերութիւն, որուն մասին չի հաղորդեր սակայն որեւէ մանրամասնութիւն* (*Տե՛ս* Արեւելք, *Կ. Պ*. 1888 *Թ*. 1394) ։ «*Դիտակ*»

*Ընկերութիւնս կը յիշէ* Հալէպի *«Բարեսիրաց»* (1866*ին*) *եւ* Պոլսոյ *«Ուսումնասիրաց»* (1870) *Ընկերութիւններու հետ: Հետեւաբար* շատ հին ըլլալու է, *այսինքն՝ իբր* 1870—72*ի տարիներէն:*

*«Կրթասիրաց Ընկերութիւն»ը հիմնած են* Գահիրէ *գտնուող պանդուխտ Արաբկիրցիները, հաւանօրէն իրենց ծննդավայրի կրթական գործին սատարելու համար* (*Հմմտ.* Արեւելք, 188 *թ.* 1394):

4. ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

*Հիմնուած է* 1872*ին* Պոլսոյ *պանդուխտ Արաբկիրցիներէ:* Հայրենիք *թերթի խմբագիրը կ՚աւետէ: «Բերկրութեամբ կը ծանուցանեմք պատուարժան ազգայնոց, մանաւանդ Արաբկիրցւոց որ* Արաբկիրի դպրոցաց նիւթական ու բարոյական հոգատարութեանը համար *մայրաքաղաքիս Արաբկիրցի ազգայինք* «Օժանդակ» անուն Ընկերութիւն *մը հաստատած են շնորհիւ եւ ջանիւք ուսումնասէր անձանց... Գոհունակութեամբ լսեցինք որ* 5000*ի չափ դրամ հաւաքեր են»* (Հայրենիք, *Կ. Պ.* 1872 *թ.* 117, *Սեպտեմբեր:* — *Տե՛ս նաեւ* Փունջ, *Կ. Պ.* 1872 *թ.* 738):

*Ընկերութեան* նպատակն *է.* «Արաբկիրու վարժարանին աղքատիկ ուսանողաց դաստիարակութեան ըստ կարեւոյն խնամ տանիլ նիւթապէս եւ բարոյապէս եւ օրինա–

ւոր դաստատուններով որ քան զոր պայծառացունել» (Հայրենիք, անդ, թ. 119)։

Ընկերութիւնը ունի 10 Յօդուածէ բաղկացած Կանոնագիր մը, զոր հրատարակած է Հայրենիք (անդ)։ Տարեկան անդամավճարն է 1 մէճիտիէ (Յօդ. 1)։ Ընդհանուր ժողովը կը կազմուի բոլոր անդամներէ (Յօդ. 2)։ Գործադիր ժողովը ունի Ատենապետ, Ատենադպիր, Գանձապետ, Հաշուակալ եւ Տեսուչ (Յօդ. 3)։

1875ին Փունջ (1875 թ. 990) կը հարցնէ թէ «Ո՞ւր է Օժանդակ Ընկերութիւնը եւ ի՞նչ եղաւ իր հաւաքած դրամը»։ Անդամ մը կը հաստատէ որ Ընկերութիւնը «գործօն է եւ նիւթապէս լաւ վիճակ ունի» (Փունջ, անդ՝ թ. 992)։

1878ին կանդուն էր Ընկերութիւնը եւ գործօն (Հմմտ. Լոյս, Կ. Պ. 1878 թ. 76)։

Գ. Վրդ. Սրուանձտեանց (Թորոս Աղբար, Ա., էջ 278) 1878ին կ՚ըսէ որ Արաբկիրցիներու Պոլսոյ Ընկերութիւնը 120 լիրայի դրամագլուխ մը կազմած էր (երկաթուղւոյ արժեթուղթ)։ Հաւանօրէն այս Ընկերութիւնը կ՚ակնարկէ։ — Վարդապետին կարծիքով Արաբկիրցիները Կարնոյ մէջ ալ Ընկերութիւն մը կազմած էին։ Զենք գտած յիշատակութիւն մը։

## 5. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

1875 Յունիս 25ին Արաբկիրէն գրուած նամակ մը կը պատմէ. «Քաղաքիս մէջ ալ վերջին ժամանակներս «Անձնուէր Ընկերու-

թիւն» *մը հաստատուեցաւ... չնորհիւ եւ քաջալերութեամբ* Տիւզկէնեան Յովհաննէս էֆ.*իի... Ընկերութեան անդամոց թիւն առ այժմ* 40 *է, որք չարաթական կը վճարեն: Ձրի դաստիարակութիւնք կ'ըլլան... Հինգ անդամէ բաղկացեալ Հոգաբարձութիւն մ'այ կայ, որոց մէջէն ընտրեալ են* Համարակալ *ու* Գանձապետ: *Սոցա անուանք են.*

*Յովհաննէս Տիւզկէնեան*
*Մ. Զաքար Տ. Աւետիսեան*
*Մ. Սարգիս Քրիչճեան*
*Գէորգ Յախրճանեան*
*Յակոբ Հազարեան*

(Փունջ, 1875 *Թ.* 1002):

## 6. ՓԻԼԻՊՊԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

*Իր ամբողջական տիտղոսն է.* «Փիլիպպեան Ընկերութիւն ի նպաստ դաստիարակութեան աղքատ մանկանց»: *Հիմնած են Արաբկիրի Բողոքական հայ երիտասարդները նպատակ ունենալով «երիտասարդաց եւ պատանեաց հոգեւոր եւ մտաւոր լուսաւորութիւնը»* (Աւետաբեր, Կ. Պ. 1880 *Թ.* 15): Աւետաբեր *կու տայ հոդ. Ընկերութեան* Կանոնագիրը, *որ կը բաղկանայ* 7 *Յօդուածէ: Ընկերութեան Ատենապետն էր* (1830*ին*) Աստուածատուր Նիկողոսեան, *իսկ Գրագիրը՝* Մինաս Տէվէճեան (*Անդ*):

6ա· ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

1877 *Սեպտ·ին Ընկերութիւն մը կազմած են* «Սրբոց Թարգմանչաց Կեդր· Ուսումնարանի» *Սաները, նպատակ ունենալով*· «Իրենց աղքատիկ ընկերակցաց գրական պիտոյքները հոգալ» (Հայրենիք, 1879 *թ*· 501)։ *Ամսական անդամավճարն էր 20 փարա*։ 1879*ի սկիզբը ունէին 2500 ղուրուշի գումար մը*։ *Գլխաւոր հիմնադիր կը յիշուի* Կարապետ Մերիճանեան։ *Հայրենիք Ընկերութեան* անունը *չէ տուած*։

1881*ին կը շարունակէր Ընկերութիւնը իր գործը*։ *Վարչական կազմն էր*·

| | |
|---|---|
| *Արշաւիր Մասեան* | *Ատենապետ* |
| *Վաղինակ Երամեան* | *Գանձապետ* |
| *Մարտիրոս Ճիլէրճեան* | *Ատենադպիր* |

(Մասիս, 1881 *թ*· 2906)։ Մասիս *ալ չէ յիշած Ընկերութեան* անունը։ *Ըստ մեզ հաւանական է որ եղած ըլլայ* «Սանուց» *Ընկերութիւն*։

7· ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

*Հաստատուած է* 1878 *Սեպտ·ին*։ *Արաբկիրէն* 1878 *Դեկտ*· 19*ին կը գրեն Պոլսոյ* Փունջին· «*Վիճակիս բարեխնամ Առաջնորդ Տէր· Ս· Հօր եւ ազգային երիտասարդութեան ջանիւք* երեք ամիս առաջ *հաստատեալ* Ընթերցասիրաց Ընկերութիւնն *փառօք կը յարատեւէ ի գոհութիւն ընկերաց, որոց թիւը* 100*ի մօտ է*։ *Այս Ընկերութեան Նպատա–*

կը իր անունէն յայտնի է, այսինքն ձրիապէս ծաւալել ուսումը եւ դաստիարակութիւնը Արաբկիրու ժողովրդեան մէջ: Ունի իր Կիրակնօրեայ Լսարանը, ուր ճառեր եւ հրապարակային դասեր կը կարդացուին եւ դանազան ուսմանց դասատուութիւններ կ'ըլլան... Ընկերութիւնս ունեցաւ իր Մատենադարանը, ուր այսօր 200 կտորէն աւելի պատուական մատեաններ զետեղուած են եւ մասնաւորաց նուէրներ երթալով կը ճոխացընեն զայն: Այս գրոց մեծագոյն մասը Թաթիկեան Մեծ. Փիլիպպոս աղայի նուէրներն են... Չեմք մոռնար նաեւ Մեծ. Մինաս էֆ. Պէրպէրեան, որ նուիրած է մէկ գեղեցիկ երկնագունտ եւ մէկ երկրագունտ. որք առաջին զարդն են Մատենադարանիս...

Ի դիմաց Տնօրէն Ժողովոյ

Մ. Յ. Հանէսեան Ատենապետ

Նազարէթ Գօլանճեան Ատենադպիր

(Փունջ, 1879 թ. 1349):

Թղթակից մը — Երուանդ — Հայրենիք-ի (1879 թ. 501) մէջ կը գրէ որ «Անձնուէր դասատուք անդուլ կ'աշխատին. հիմնադիր Սրբազանն (Ապահունի) երբեմն կ'այցելէ ի խրախոյս Ընկերութեան»:

Ընկերութիւնը կը գիտէ նպաստել Ուսումնարանին եւ աղջկանց Զարուհեան վարժարանին (Հայրենիք, 1880 թ. 611):

### 8. ԱՊԱՀՈՒՆԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

Կազմած են Արաբկիրի երիտասարդները ի պատիւ իրենց Առաջնորդ Եզնիկ Եպ. Ապահունիի։ Նպատակը՝ «յառաջդիմութեան օգնել»։ Տարաթական անդամավճարը՝ 10 փարա (Փունջ, 1880 թ. 1524)։

### 9. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1887)

Հիմնուած է 1887ին։ Հիմնադիրներէն եւ վարիչներէն մին եղած է Արթաւքի Սարաֆեան (ծն. 1862ին)։ Ընկերութեան նպատակն եղած է՝ աղջկանց կրթութեան սատարել (Տարեցոյց 1914 Կ. Պ. էջ 90)։ Մանրամասնութիւն կը պակսի։

### 10. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1897)

Հիմնած է Արաբկիրի Առաջնորդ Մուշեղ Ծ. Վ. Սերոբեան 1897ի աշնան։ Կը յիշուի 1897 Դեկտ. 21ին (Մասիս 1897 թ. 350)։

### 11. ՈՐԲԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1899)

Կազմուած է Գահիրէ (Եգիպտոս)։ Արդէն 1899 Մայիսին հիմնումի նախաձեռնարկ եղած են, ինչպէս կ'իմացնէ թղթակից մը Գահիրէէն՝ Պոլսոյ Արեւելքին (1899 թ. 4056)։

Գահիրէի Փիւնիկ թերթը 1899ին կ'իմացընէ որ «Քանի մը ձեռներէց երիտասարդներու ջանքերով» 1899ին Գահիրէի մէջ եղող Արաբկիրցի պանդուխտներէ կը կազմուի

«Որբասիրաց Ընկերութիւնը» (Փիւնիկ, Գահիրէ 1899 թ. էջ 152—3)։ Թերթը չունի մանրամասնութիւն։

Նոր Արաբկիրի (1938, էջ 235) մէջ Ընկերութիւնս կոչուած է «Որբասիրաց Միութիւն» (հաւանօրէն վերակազմութենէ վերջ) եւ կարծուած է թէ հիմնումը 1896—7ին տեղի ունեցած է, ինչ որ հաւանական չի թուիր, քանի որ երկու ժամանակակից թերթերու վկայութեամբ տեսնուեցաւ թէ հիմնումը 1899ին տեղի կ'ունենայ։

Նպատակն եղած է. «Որդեգրել կարելի եղածին չափ շատ որբեր եւ խնամել մինչեւ անոնց չափահաս ըլլալը»։

Կոչուած է նաեւ «Հոգատար Որբախնամ Ընկերութիւն» կամ լոկ «Հոգատար Ընկերութիւն» (Փունջ, 1900 թ. 2674. Յունուար 1)։

1899 Նոյեմբեր—Դեկտեմբերին կը գրեն Գահիրէէն՝ Պոլսոյ Արեւելքին. «Արաբկիրի բարեխնամ Առաջնորդ Գեր. Մուշեղ Վարդապետի յորդորական գիրերուն վրայ՝ եգիպտաբնակ Արաբկիրցի ազգայիններու նախաձեռնութեամբ եւ Առաջնորդարանի վաւերացմամբ՝ ի նպաստ նոյն գաւառի որբերուն ՀՈԳԱՏԱՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ մը կազմուեցաւ, որ իր առաջին գումարման մէջ իր դեռ սակաւաթիւ անդամներէն հինգ ոսկի հանգանակած եւ իբր նախընծայ ղրկած է Տ. Մուշեղ վարդապետին՝ իր նպատակին

*գործածուելու համար*» (Արեւելք, Կ. Պ. 1899 *թ*· 4207, *Դեկտ*· 26)։

*Ընկերութիւնը* 1911*էն առաջ* «շատոնց ի վեր կազմալուծուած էր»· *իր դրամագլուխը* — 412 *ոսկի* — *Արաբկիր ղրկուած է, որմէ* 40 *ոսկի Որբախնամին գործածուած է, իսկ մնացածով ազգապատկան գետնի վրայ շինել կ'ուզուի* պանդոկ—վաճառանոց *մը, հասոյթը կրթական նպատակի յատկացուելու համար* (Կանոնագիր «*Կրթասիրաց Միութեան*» *Գահիրէի· Գահիրէ* 1911, *էջ* 18)։

12· ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1900)

*Հիմնուած է* 1900*ին Ֆիլադելֆիոյ* (*Ամերիկա*) *մէջ՝ նպատակ ունենալով* «օգնել Արաբկիրի մէջ բացուած երկսեռ Որբանոցներուն»։

1902*ին Որբանոցները գոցուած ըլլալով՝* «Որբախնամ Ընկերութիւն»*ը կը վերածուի* «Արաբկիրի Ուսումնասիրաց Ընկերութեան»՝ *այս անգամ նպատակն ըլլալով՝* օգնել Արաբկիրի կարօտ աշակերտներուն անխտիր (Նոր Արաբկիր *Տեղեկատու, Նիւ Եորկ* 1940 *թ*· 19, *էջ* 301)։ — Մուշեղ եպիսկոպոս (*Ամերիկահայ Տարեցոյց· Պոստոն* 1912, *էջ* 183), *որուն անձանօթ եղած է* «Որբախնամ Ընկերութիւն»*ը՝* «Ուսումնասիրաց Ընկերութեան» *հիմնումի թուական կը համարի* 1907 *Մայիս* 1։

1902*էն* 1910 Արաբկիրի Ուսումնասիրաց Ընկերութիւնը *կ'ունենայ ճիւղեր* Նիւ Եոր-

կի, Բոստոնի եւ Բրիճվորթի մէջ: 1911ին Ֆիլատելֆիոյ մէջ գումարուած ժողովի մը մէջ Ֆիլատելֆիոյ, Նիւ Եորքի, Բոստոնի եւ Բրիճվորթի մասնաճիւղերը կը միանան «Ուսումնասիրաց Միութիւն» անունի տակ՝ իրենց նպատակ դնելով. Արաբկիրի մանչերու եւ աղջիկներու վարժարաններու օգնելով՝ զանոնք կրթական բարձր մակարդակի մը հասցնել: Այս օժանդակութիւնը յարատեւ եւ մնայուն դարձնելու համար կը խորհուի անշարժ կալուած մը դնել՝ իբրեւ մնայուն եկամուտի աղբիւր — կը գնուի շէնք մը Ֆիլատելֆիոյ մէջ. 1919ին այդ շէնքը ծախելով՝ աւելի բարձր արժէքով շէնք մը կը գնուի:

Ուսումնասիրաց Միութեան 1917ի Պատգամաւորական ժողովը Արաբկիրցի աղէտեալներուն օգնելու համար կ'որոշէ անջատ Միութիւն մը կազմել, որ կը կոչուի «Վերաշինաց Միութիւն» եւ որ մինչեւ 1922 նիւթական մեծ օգնութիւն կը հասցնէ կարօտ Արաբկիրցիներուն, կ'ունենայ 200ի չափ անդամ եւ 16,000 դոլարի դրամագլուխ մը:

«Ուսումնասիրաց» եւ «Վերաշինաց» Միութիւնները 1922 Դեկտ.ին Նիւ Եորքի մէջ ժողով գումարելով՝ կը միանան իրարու հետ՝ «Ամերիկահայ Արաբկիրցիներու Միութիւն» նոր յորջորջումով: Այս Միացեալ Միութիւնը 1924 Յունուարին Նիւ Եորքի մէջ գումարուած Պատգամաւորական ժողովին մէջ կ'որոշէ Արաբկիրի եւ սփիւռ-

քի կարօտ հայրենակիցները Հայաստան փոխադրել եւ զանոնք հոն հաստատել։

Միութիւնը Խորհրդային Հայաստանի կառավարութեան հետ համաձայնելով՝ Հայաստանի մէջ Նոր Արաբկիր աւանը կը կառուցանէ եւ հոն կը փոխադրէ Արաբկիրցիները։ 1940ին Նոր Արաբկիր ունէր 6000 բնակիչ՝ 1000 բնակարանով (Նոր Արաբկիր, անդ՝ էջ 301—303)։

«Ամերիկահայ Արաբկիրցիներու Միութիւն»ը 1925էն սկսած կը հրատարակէ «Նոր Արաբկիր» Տեղեկատու անունով պարբերաթերթ մը, զոր մինչեւ օրս ալ կը շարունակէ հրատարակել՝ կապ պահելով բոլոր Արաբկիրցիներու հետ։ Այս Միութիւնը ձեռնարկած է հրատարակել նաեւ Արաբկիրցիներու Յուշամատեանը։ Յաջողութիւն մաղթելով իր այս պատուաբեր ձեռնարկին՝ պիտի փափաքէինք որ Միութիւնը պահէր իր գոյութիւնը յամայր ամս՝ միշտ օգտակար հանդիսանալով Հայ Ազգին։

13. ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

Հիմնուած է 1909 ամրան Արաբկիրի մէջ։ 1909 Սեպտ. 20 Թուականն նամակով Արաբկիրի Առաջն. Տեղապահ Մեհրուժան վրդ. կ՚իմացնէ թէ արդէն 205 անդամ գրուած են եւ իւրաքանչիւր անդամ տարեկան 12 ղուրուշ բաժնեգին կը վճարէ։ Ունի 14 անդամէ կազմուած Գործադիր ժողով մը (Արշալոյս, Գահիրէ 1909 Թ. 93)։

*Միութիւնը ունի իր* Կանոնագիրը, *բաղկացած* 16 *Յօդուածներէ եւ հրատարակուած Գահիրէի* Արշալոյս*ին* (1909 *թ.* 123—4) *մէջ*:

*«Կրթասիրաց»ը* 1909 *Սեպտ.* 1*էն սկսած ստանձնած է Արաբկիրի Ազգ. վարժարանաց Հոգաբարձութիւնը* (Արշալոյս, 1909 *թ.* 123):

*Միութիւնը կ՚ունենայ ճիւղ մը* Գահիրէի մէջ:

## 14. ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*Հիմնուած է* Գահիրէ 1910 *Յունուար* 1*ին*: *Իր նպատակն է. «Իր ունեցած հասոյթով պիտի օժանդակէ Արաբկիրի* Ուսումնարանին՝ *ապահովելով անոր պիւտճէին մէկ մասը կամ ամբողջութիւնը. յառաջիկային պիտի օժանդակէ նաեւ աղջկանց վարժարանին, իր ուժերուն ներած սահմանին մէջ»* (Կանոնագիր, *Յօդ.* 1): — *Միութիւնը ունի իր* Կանոնագիրը, *բաղկացած* 26 *Յօդուածէ եւ հաստատուած Ազգ. Գաւառ. Վարչ. Պատ. Քաղ. Ժողովէն*, 1911 *Օգոստ.* 4*ին*:

*Ամսական անդամավճարն է* 2 *դահեկան* (*Յօդ.* 4). *Միութիւնը ունի Ընդհ. Ժողով եւ Գործադիր Ժողով* (*Յօդ.* 7—8): *Ահա՛ առաջին Գործ. Ժողովը*.

| | |
|---|---|
| Ս. Օտապաշեան | Ատենապետ |
| Կ. Վարդանեան | Փոխ—Ատենապետ |
| Փ. Պալունի | Ատենադպիր |
| Ց. Ճանիկեան | Հաշուակալ |
| Ս. Երեմեան | Գանձապետ |
| Գ. Դարբինեան | |

Մ. Ս. Թէվէքլեան (Միամեայ Տեղեկագիր, Գահիրէ 1911, էջ 7—9)։ Առաջին տարին ունեցած է Մուտք՝ 8412·50 եւ Ելք՝ 1322·50 (Անդ)։

1911ին «Ուսումնասիրա՞ց կոչուած է. Ազատամարտ (1911 Թ. 679) 1911ին կը յիշէ Գահիրէի մէջ «Ուսումնասիրաց» մը Արաբկիրցիներու։

## 15. ԱՐԱԲԿԻՐԻ ԵՒ ԹԵՄԵՐՈՒՆ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

Կազմուած է Պոլիս 1910ին։ Կը յիշուի 1910 Հոկտեմբերին սկիզբը (Ժամանակ, Կ. Պ. 1910 Թ. 610)։ Առաջին Գործադիր Ժողովը կը կազմէին։

| | |
|---|---|
| Յովհաննէս Պապիկեան | Ատենապետ |
| Կարապետ Մ. Այճեան | Ատենադպիր |
| Յակոբ Ճիզմէճեան | Գանձապետ |
| Զենոբ Իփէքճեան | Փոխ—Ատենապետ |
| Յովհաննէս Թէրզիպաշեան | |

Ռուբէն Տ. Միքայէլեան (Ժամանակ, անդ՝ թ. 656)։ Իր կանոնագիրը տեսած չենք։ Անշուշտ ունէր։ Իր նպատակն է. «Առանց յարանուանական խտրութեան նիւթապէս եւ բարոյապէս օժանդակել քաղաքի (Արաբկիր) եւ գիւղերու կարօտ դպրոցներուն» (Մուրճ, Կ. Պ. 1912 թ. 7, էջ 4)։

16. «ԵՓՐԱՏ» ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

Կազմուած է Պոլիս, Զինադադարէն անմիջապէս վերջ, 1918ին։ Խմբական այս Միութեան բաղկացուցիչ քաղաքներն են՝ Արաբկիր, Խարբերդ, Ակն, Մալաթիա, Զմշկածագ, Բերի։ Միութիւնը ունի 10 Յօդուածէ կազմուած Ծրագիր—կանոնագիր մը, որուն առաջինը կ՚ըսէ. «Իր շուրջը հաւաքել Պոլիս եւ շրջականները գտնուող բոլոր հայրենակիցները, ներկայ պարագայի ստիպողականութեան տակ, միասիրտ համագործակցութիւն մը ստեղծելու ջանադրութեամբ»։ Միութեան առժամեայ պատուիրակն է Արաբկիրցիներու կողմէ՝ Մ. Սիրունեան (Ժամանակ, 1919 թ. 3404, Յունուար 3)։

17. ԱՐԱԲԿԻՐՑԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1925)

Կազմուած է Երեւանի մէջ՝ ունենալով իր օրինաւոր Վարչութիւնը՝ աջակցելու համար «Ամերիկահայ Արաբկիրցիներու Միութեան» Նոր Արաբկիրի ձեռնարկին (Նոր Արաբկիր, 1925 էջ 5)։

18· ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (···1925)

*Կազմուած է* Հալէպ *եւ կապ կը պահէր 1925ին՝ Կեդրոնական Միութեան հետ* (Նոր Արաբկիր· *անդ՝ էջ* 6) ։

19· ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1925)

*Կը կազմուի* Բէյրութի *մէջ* 1925*ին եւ կ՚ունենայ Վարչ· Մարմին մը՝ սա՛ անձերով·*

Յ· Մ· Գալուստեան *Ատենապետ*
*Ս· Մ· Մաթիկեան* *Ատենադպիր*

(Նոր Արաբկիր, *անդ*) ։

20· ԿՐԹ· ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1925)

*Հիմնած են* Բէյրութաբնակ *Արաբկիրցի երիտասարդներ* 1925*ի վերջերը՝ սա՛ նպատակով·*

*Ա· Արաբկիրցի երիտասարդները բարոյապէս, մտաւորապէս եւ ֆիզիքապէս զարգացման օգտակար ըլլալ·*

*Բ· Բոլոր Արաբկիրցիներու միջեւ փոխյարաբերութիւն մշակել եւ ջանալ «Նոր Արաբկիրի» գաղափարով ապրեցնել·*

*Գ· Հայրենի դիտակցութիւնը եւ ազգային ոգին վառ պահել* (Նոր Արաբկիր, 1926, *էջ* 13—14) ։

21· ԱՐԱԲԿԻՐԻ ԵՒ ՑԱՐԱԿԻՑ ԳԻՒՂԵՐՈՒ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1926—28)

*Կազմուած է* Մարսէյլ (*Ֆրանսա*) *եւ ունեցած իր* ծրագիր–կանոնագիրը ։ 1928 *Մայիս* 13*ին* Ն· Ս· Կիւմիւշկէրտանեանի *միջոցաւ*

կը վերակազմուի՝ *իբրեւ «Ամերիկահայ Արաբկիրցիներու Միութեան» մէկ մասնաճիւղը, կոչուելով՝* «Հայրենակցական Միութիւն Մարսէյլի մասնաճիւղ» (Նոր Արաբկիր, 1928, *էջ* 90)։

## 22. ՏԻԿՆԱՆՑ ՕԺԱՆԴԱԿ ՄԻՈՒԹԻՒՆ (1936)

1936 *Նոյեմբերին կազմուած է* Բոստոնի «Տիկնանց Օժանդակ Միութիւն»*ը, որուն Ատենապետուհին էր* Տիկ. Վարդուհի Եաղճեան։ *Միութիւնը* 1940*ին կը ներկայացնէ «Գիւղական Հարսանիքը»* (Նոր Արաբկիր, 1940, *էջ* 292։ *Տե՛ս նաեւ էջ* 325)։

## 23. ՏԻԿՆԱՆՑ ՕԺԱՆԴԱԿ ՄԱՐՄԻՆ (1940)

*Կազմած են Նիւ Եորքի Տիկինները՝* 1940 *Սեպտ.* 19*ին։ Ահա՛ իր անդրանիկ Վարչակազմը.*

| | |
|---|---|
| *Տիկ. Ե. Քէնտիկեան* | *Ատենապետուհի* |
| *Տիկ. Զուարթ Զէյթէկեան* | *Ատենադպրուհի* |
| *Տիկ. Զապէլ Եկաւեան* | *Գանձապահ* |
| *Տիկ. Երանուհի Ճանճիկեան* | |
| *Տիկ. Արաքսի Սիրականեան* | |
| *Տիկ. Անժել Քէչկէքեան* | |
| *Տիկ. Մարիցա Բաղդիկեան* (Նոր Արաբկիր, *անդ՝ էջ* 321)։ | |

# ԳԻՒՂԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ

## ՄԱՇԿԵՐՏ ԳԻՒՂ

### 1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

*Հիմնած են* Պոլիս *եւ* Բերիա–Հալէպ *պանդխտած Մաշկերտցիներ* 1868*ի ամառը։ Իրենց նպատակն եղած է* գիւղի դպրոցին վարժապետ հոգալ (Փունջ Օրագիր, *Կ. Պ.* 1868 *Թ.* 204, *Սեպտ.* 12)։

### 2. «ԱԶԱՏԱՌՈՒ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868—70)

*Հիմնած են* Բերիա (*Հալէպ*) *գտնուող պանդուխտ Մաշկերտցիներ։ Դժբախտաբար հիմնումի ճշգրիտ թուականը տրուած չէ։* 1879 *Հոկտ.* 15/27 *թուականը կրող Մաշկերտէն թղթակցութիւն մը հետեւեալը կը գրէ.* «Քանի տարիներ յառաջ ի Բերիա *գտնուող պանդուխտ Մաշկերտցւոց կազմած* «Ազատառու» Ընկերութիւնը, *որ* վերջին տարիներս Գիւղիս մէջ Հոգաբարձութեամբ մը կը խնամուէր *եւ մանաւանդ* 2—3 տարիէ ի վեր անգործութեան մատնուած էր բաժանորդ գտնուող անձանց կողմէն՝ *իւր ամբողջութեամբը նուիրուեցաւ վարժարանին եւ Հոգաբարձուաց գործառնութեանց հաշիւներն ալ քննուելով՝ նոր մուրհակի վերածեալ* նոյնպէս երաշխաւորութեան եւ գրաւներու ենթարկուած 13 հազար ղրուշի մօտ գումար

մը բաղկացաւ. այդ գումար Նոր Հողաբարձութեան մը հսկողութեան տակ դրուեցաւ՝ վեց ամիսն անգամ մը անցեալ տոկոսը հանելու եւ վարժարանիս աղքատ աշակերտելոց թոշակի եւ գրական պիտոյից ծախսելու պայմանաւ» (Լրագիր, Կ. Պ. 1880 Թ. 1166, Յունուար 9) :

Ինչպէս կը տեսնուի՝ 1868ի «Ուսումնասիրական Ընկերութեան» պէս հին ու վաղեմի Ընկերութիւն մը կը թուի ըլլալ այս «Ազատառու»ն : — Գիւղի դպրոցը կոչուած է «Ապահունեան» :

### 3. ՄԻՈՒԹԻՒՆ ԵՓՐԱՏԱՅ ԱՓԱՆՑ (1880)

Կազմուած է 1880ին : Նպատակն է. «Որբանոց ունենալ եւ ազգ. բարերար կանգնիլ» (Մասիս, 1881 Թ. 2844) : Ունեցած է Կանոնագրութիւն (Մասիս, 1883 Թ. 3415, 3428) :

### 4. ՁԱՐՈՒՀԵԱՅ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1881)

Հիմնուած է 1881 Յունուար 1ին : Հիմնադիրներն են Մաշկերտի Մայրերը, նպատակ ունենալով իրենց հսկողութեան տակ ունենալ աղջկանց վարժարան մը «եւ իրենց զօրութիւնը նուիրել այդ ճիւղին» : Կը կազմեն Կանոնագրութիւն մը. Ընդհ. եւ Գործ. ժողով. տարեկան անդամավճարը՝ 10 դուրուշ. քանի մ'օրուան մէջ կ'ունենան 100 անդամ, կը բանան աղջկանց վարժարանը, կը

*գտնեն վարժուհի եւ օգնական «եւ այսօր 30ի մօտ* աղջկունք եւ հարսունք *իսկ կ՚ուսանին անդ, կը գրեն եւ կը կարդան», կը գրէ Մաշկերտցին* Մկրտիչ Մաթիկեան (Մասիս, 1881 *Թ*. 2844)։

5. ԵՓՐԱՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ՄԱՇԿԵՐՏԻ ՀԱՅՈՑ
(1908)

*Կազմած են* Հալէպաքնակ *Մաշկերտցիներ* 1908*ի վերջերը, ջանալով* «զարկ տալ աւերակ դարձած դպրոցին, տարածել գիւղացիական իրաւունքներու սկզբունքը» (Ազատամարտ, *Կ. Պ.* 1909 *Թ*. 50)։ — *Ամերիկաբնակ Մաշկերտցիներ կը կազմեն ճիւղ մը, ընտրելով սա՛ վարչութիւնը*

| | |
|---|---|
| *Մ. Քոնտաղեան* | *Ատենապետ* |
| *Թամզարայեան* | *Ատենադպիր* |
| *Մ. Պետիրեան* | *Գանձապահ* |

(Ազատամարտ, *անդ*)։

*Հաւանօրէն նոյն Ընկերութիւնն է որ* 1911*ին կը կոչուի* «Եփրատ» Միութիւն»՝ Հալէպի *մէջ, որ* Պոլիս *ալ ճիւղ մը ունի, կ՚ըսուի* (Ազատամարտ, 1911 *Թ*. 679)։ — *Ունեցած է իր* Կանոնագիրը (Նոր Արաբկիր, 1941, *էջ* 334)։

## ԱՆՋՐԴԻ ԳԻՒՂ

1. ՎԱՐԴԱՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860)

Ս. Ամատեան, *Անջրդեցի, կը գրէ* 1912 *Մարտին. «Անջրդի գիւղին երիտասարդութիւնը Հալէպի մէջ* վերահաստատեց երեք

տարի առաջ *«Վարդանեան Ընկերութիւնը»*, *զոր* գրեթէ կէս դար առաջ *հիմնած էր հին սերունդը՝* Անջրդիի Վարժարանին ու Եկեղեցիին բարեկարգութիւնն ու յառաջադիմութիւնը *նպատակ ունենալով... Այս Ընկերութիւնն ալ իր կարգին նախախնամութիւն մ'եղած է Անջրդիի վարժարանին համար, որուն նեցուկն ու խնամակալն է»* (Բիւզանդիոն, 1912 *Թ.* 4694):

*Հիմնումը եղած է, ուրեմն, իր* 1860–*ական թուականին*, Հալէպի *մէջ*: 1909*ին* վերակազմուելէ *վերջ՝* «*ետ տանուած են գրաւուած հողերուն մէկ մասը, ձեռք բերուած են կորուստի մատնուած գումարներ, նպատակայարմար ձեւի վերածուած է վարժարանին հին ու տձեւ շէնքը*, բացուած է աղջիկներու համար յատուկ վարժարան, *վարժարանին կահ կարասի պատրաստուած, ժողովրդական* Մատենադարանի *մը հաստատութեան ձեռնարկուած...»* (*Անդ*):

*Ընկերութիւնը ունեցած է 2 ճիւղ՝* Ամերիկա *եւ* Պոլիս (Ազատամարտ, 1911 *Թ.* 679): *Գիւղի վարժարանը կը կոչուէր* «Վարդանեան վարժարան»:

## 2. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

Յակոբ Գ. Կուլիկեանց 1870 *Յունուար 2 թուակիր նամակով իմացնելէ յետոյ թէ Արաբկիրի* Անջրդի Գիւղը 100 *տուն հայ բնակիչ ունի՝ կը գրէ որ Անջրդեցիները իրենց «Հարկաւոր եղած լուսաւորութիւնը փնտռե–*

*լու կը տքնին, ուստի* Ընթերցասիրաց անուն Ընկերութիւն մը հաստատեցին, որպէս զի սոյն Ընկերութենէն գոյացած հասոյթովը գիւղիս դպրոցը կառավարեն» (*Փունջ, Կ. Պ.* 1870 *Թ.* 432):

*Ընկերութիւնը* Պոլիս *հիմնուած է* 1870 *Յունուար 1ին: Ունի* Կանոնագրութիւն *մը* 24 *Յօդուածէ բաղկացած, զոր Պոլսոյ* Ծիածան *թերթը հրատարակած է: Կուտանք քանի մը Յօդուած. Ընկերութեան նպատակն է.* «Արաբկիրի Անջրդի գիւղի աղջըկանց եւ մանչերու մէջ դաստիարակութիւնը, երկրագործութիւնը, ասեղնագործութիւնը եւ տնտեսագիտութիւնը ծաւալել»: Անդամավճարն է շաբաթը 10 փարա (*Յօդ.* 4): *Ընկերութիւնը երկու ժողովք ունի՝ Տնօրէն եւ Հսկիչ* (*Յօդ.* 8): *Ահա առաջին Վարչութիւնը.*

*Գէորգ Մ. Հոտլըեան* *Ատենապետ*
*Յակոբ Գ. Կիւլեան* *Ատենադպիր*

(Ծիածան, *Կ. Պ.* 1870 *Թ.* 117):

*Հիմնադիրները* 10 *Անջրդեցիներ են, որոնք իբրեւ հիմնադրամ կը դնեն* 1212 *դուրուշ եւ զայն, ինչպէս նաեւ յաջորդ հաւաքուելիք դրամները պիտի չահեցնեն մինչեւ* 1880, *որմէ վերջ դրամագլուխին բերած տոկոսները գիւղի դպրոցին պիտի յատկացուին* (Մանզումէի Էֆքեար, *Կ. Պ.* 1870 *Թ.* 1126):

Չենք գիտեր թէ ի՛նչ եղած է արդիւնքը· տեւա՞ծ է մինչեւ 1880։ Որեւէ յիշատակութեան չենք հանդիպիր։

### 3· ԽՆԱՄԱԿԱԼ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (···1884)

Կը յիշուի 1885 Յունուարին։ Հիմնուած է Հալէպ՝ Գիւղին «վարժարանին օգնելու նպատակաւ··· տարուէ տարի չափաւոր քանակութեամբ կը նպաստէ արդէն» (Արեւելեան Մամուլ, Զմիւռնիա 1885, էջ 108)։

## ՎԱՂՇԷՆ ԳԻՒՂ

### 1· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

Հիմնուած է Ադրիանապոլիս 1872ին եւ ունեցած ճիւղ մը Պոլիս։ Երկար տարիներ հոգացած է Գիւղի վարժարանին եւ ուսուցիչին ծախքերը։ Գիւղին եկեղեցին ունեցած է դրամագլուխ մը, որ օժանդակ մ՚եղած է Ընկերութեան եւ ի հարկին տեղւոյն ժողովուրդին տրամադրած է իր դրամը, որով ժողովուրդը նիւթապէս կարօտութիւն չէ ունեցած։ Ընկերութիւնը անդամներ ունեցած է նաեւ Գիւղին մէջ, իսկ Ադրիանապոլսոյ մէջ իր գանձանակը շրջաբերութեան կ՚ելլէր շաբաթը անգամ մը եւ նուիրատուներ կը գտնէր նաեւ օտարներէն (Մասիս, Կ· Պ· 1886, էջ 221—2)։

### 2․ ՇԱՀԱԴԻՏԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1886)

*Կը յիշուի* 1886*ին, առանց որեւէ ծանօթութեան: Ընկերութեան շահը բաժանորդ անդամներուն համար էր* (Մասիս, *անդ*):

## ԾԱԳ ԳԻՒՂ

### 1․ ԾԱԳ ԳԻՒՂԻ «ՈՍԿԵԳԵՏԱԿ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860—70)

*Հաւանօրէն հիմնուած է* Բերիա—Հալէպ: *Հիմնումի ճիշդ թուականը չենք գիտեր: Ընկերութեանս մասին տրուած տեղեկութեան մէջ կ'ըսուի*․ «... շատ հին ժամանակներէ ի վեր հաստատուած եւ մեծ գործունէութիւններ ցոյց տուած է, որոնց կարգին են Գիւղին հոյակապ եկեղեցիին շինութիւնը եւ դպրոցի մը բացումը»: *Ընկերութեան անունը կրող* հին կնիքը *մինչեւ* 1928 «*անվթար մնացած*» *եւ* 1928*ին* Հալէպի *մէջ կազմուած* «Ծաղ Գիւղի Բարեսիրաց Ընկերութեան» *քով* «*մեծ խնամքով ի պահ դրուած էր*»:

1885*ին Ընկերութիւնը աշխուժանալով եւ թերեւս նաեւ* վերակազմուելով՝ *իր* տիտղոսը կը փոխէ *եւ կը կոչուի* «*Ծաղ Գիւղի* Ընկերասիրաց Ընկերութիւն»․ *կը շինէ* երկրորդ կնիք մը *եւ ասով կը սկսի նոր թափով մը գործել*: «Գրեթէ տասնեակ մը տարիներ շարունակուելէ վերջ՝ անյարմար պարագաներու ստիպողութեան տակ... իր գործունէութիւնը կը դադրեցնէ»:

1928ին «Ծագցի բոլոր հայրենակիցներու փափաքով եւ Հալէպի մէջ գումարուած Ընդհ. Ժողովոյ հաւանութեամբ կ՚որոշուի մինչ այդ ատեն անաղարտ մնացած 1885 թուակիր կրող երկրորդ կնիքին շուրջը համախմբուիլ եւ նոր եռանդով յարատեւ գործել» (Տե՛ս Ծագ Գիւղի Ընկերասիրաց Ընկերութեան Ծրագիր—Կանոնագիր. Հալէպ 1928, էջ 1 ծանօթութիւն):

«Ընկերասիրաց Ընկերութեան» Կանոնագիրը 25 Յօդուած ունի, որուն երկրորդը կ՚ըսէ. «Ընկերութեանս նպատակն է... կարօտ Ծագցի Հայերու, մանաւանդ այրիներու եւ որբերու նիւթապէս օգնել... անդործներու գործ հայթայթել...» (Անդ, էջ 2):

## 2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (...1911)

Լոկ անունով կը յիշուի 1911 Օգոստոսին, հիմնուած Ամերիկա (Ազատամարտ, 1911 թ. 679):

## 3. ՊԱՏԱՆԵԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1929)

Հիմնուած է Հալէպ (Ոսկեգետակ, Պէյրութ 1946, էջ 212):

## 4. ԾԱԳ ԳԻՒՂԻ ՎԵՐԱՇԻՆԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Կազմուած է Ամերիկայի մէջ՝ նպատակ ունենալով Նոր Արաբկիրի մէջ (Հայաստան) Ծագցիներու համար շէնքեր շինել (Նոր Արաբկիր Տեղեկատու, 1937, էջ 196):

## ՍԱՂՄԿԱՑ ԳԻՒՂ

1. «ԱՐԾԻՒ» ՄԻՈՒԹԻՒՆ (···1911)

Միայն անունը յիշուած է 1911 Օգոստոսին, հիմնուած ըլլալով Հալէպ եւ ճիւղ մ'ալ Պոլիս ունենալով (Ազատամարտ. 1911 թ. 679)։ Հիմնուած ըլլալու է 1908էն քիչ վերջ։

## ՇԷՓԻԿ ԳԻՒՂ

1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1918—21)

Հիմնումի թուականը անծանօթ է մեզ։ Վարչական կազմն էր․

| | |
|---|---|
| Առաքել Մելքոնեան | Ատենապետ |
| Կարապետ Յակոբեան | Ատենադպիր |
| Կարապետ Բարիկեան | Գանձապետ |

(Ոսկեգետակ Գ. 1948, էջ 170—1)։

*

## ՏԷՐԷՆՏԷ

1. ···ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1848—49)

Տէրէնտէցի Պապա Պապայեան իր ամբողջ ինչքը ծախելով՝ ստացած դրամով դպրոց մը կը շինէ Տէրէնտէի մէջ։ Պոլսոյ Պատրիարքը գովեստի կոնդակ մը գրելով՝ կը յորդորէ տեղացիները որ Ընկերութիւն մը կազմեն եւ ուսուցիչ բերեն գիւղը (Հա–

յաստան, Կ. Պ. 1848 Թ. 128, Դեկտ. 4)։ Հաւանական է որ Ընկերութիւնը կազմուած ըլլայ 1848ի վերջը կամ 1849ի սկիզբը։ Յիշատակութիւն մը գտած չենք։

## ԶՆՔՈՒՇ

### 1. ···ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860—5)

Զնքուշի առաջին Մշակ. Ընկերութիւնը կազմած են տեղւոյն Հայ Կաթողիկէները իբր 1860—5ին։ Զնքուշէն Պօղոս Ստեփանոս Պետրոս Ժ. Կաթող. Պատրիարքին 1884 Յուլ. 11ին 13 հոգիի ստորագրութեամբ գրուած բողոքագիր մը կու տայ սա տեղեկութիւնը.— Արդէն 1860ական թուականներուն Զնքուշի Հայ Կաթողիկէները հիմնած են Ընկերութիւն մը «դպրոցի եւ եկեղեցիի պէտքերը հոգալու համար»։ Ընկերութիւնը կրցած է մինչեւ 1873 դիմանալ եւ հաւաքել 10·000 դահեկան։ 1873—81 հոն պաշտօնավարող քահանան (Յովհ. Ռ. Ամիրեանց) կը ջնջէ Ընկերութեան անունը, կը վատնէ հաւաքուած դրամը, եւ այլն, որով անծանօթ կը մնայ մեզ Ընկերութեան անունը։

### 2. ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877—8)

Զնքուշի Հայ Բողոքականները հիմնած են այս Ընկերութիւնը, որուն տածիչը եղած է Պատ. Սարգիս՝ 1880ին։ Ընկերութիւնը ունի Գործադիր Ժողով մը, որ կը բաղկանայ Ատենապետէ մը, Գրագետէ մը եւ 2

խորհրդականն է : Անդամները կը վճարեն շաբաթական տուրք մը : 1881ին ունէր 40 անդամ (Աւետաբեր, Կ. Պ. 1881 թ. 45) : Ընկերութիւնը կը հոգայ տեղւոյն մանչերու դպրոցին ծախքերը (Աւետաբեր, 1882 թ. 21) :

3. ՔԵՐՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1881—2)

Կազմած են Զնքուշի Հայ Բողոքական Տիկինները, որոնք ստանձնած են հոգալ տեղւոյն աղջկանց դպրոցի եւ Մանկարանի (Մանկապարտէզ) ծախքերը (Աւետաբեր, Կ. Պ. 1882 թ. 21) :

4. ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

Կազմուած է Լորէնս (Ամերիկա) : 1911ին կը բաժնուի երկուքի.— «Հայրենասիրաց» եւ «Ուսումնասիրաց» Ընկերութիւններու :

5. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1912)

Հիմնած է Հ. Խաչիկ Ռ. Աթանասեան՝ Զնքուշի մէջ 1912 Նոյեմբերին : Մանրամասնութիւն կը պակսի :

6. «ՎԵՐԱԾՆՈՒՆԴ» ՄԻՈՒԹԻՒՆ (1920—21)

Զնքուշ եւ Ատիշ գիւղերու վերապրողները Պոլսոյ մէջ հիմնած են «Վերածնունդ» Միութիւնը 1920ին : (Ժողովուրդի Ձայնը, Կ. Պ. 1922 թ. 1025, Փետր. 5/18) :

# ԵՈԶՂԱՏ

## 1. ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1852)

Եոզղատի հնադոյն եւ առաջին Մշակութային Ընկերութիւնը կը կարծենք թէ եղած ըլլայ Լուսաւորչեան Ընկերութիւնը, հիմնուած 1852ին: Հիմնադիրն է Եոզղատի Առաջնորդ Մկրտիչ Վ. Տիգրանեան, որ հազիւ հասած իր վիճակը՝ թէ՛ քաղաքի եւ թէ 55 գիւղերու մէջ կրթութիւն եւ ուսում ծաւալելու հոգ կը տանի:

Եոզղատէն 1852 Հոկտ. 21ին Պոլսոյ Նոյեան Աղաւնիի գրուած նամակի մը մէջ կը կարդանք.— «Անձանօթ էր տեղւոյս լրութեան անուն Ընկերութեան եւ աղջկանց վարժարանի: Իսկ հոգեւոր Դէտս այս յորդորանօք համոզեաց զխիտս հասարակութեան հաստատել Ընկերութիւն, որում եւ անուն եդ «Լուսաւորչեան» եւ այսու կամի զի սրբոյ Հօրն մերոյ Գրիգորի յիշատակաւ՝ այս հաստատութիւն հող տարցի Լուսաւորութեան հայ բնակչաց վիճակիս եւ ի պատիւ երկոտասան չարչարանաց սրբոյ Լուսաւորչին՝ անդամք Ընկերութեան «երկոտասան դահեկան վճարեսցեն ամ յամէ» (Նոյեան Աղաւնի, Կ. Պ. 1852 Թ. 39):

Եոզղատէն 1852 Դեկտ. 10ին գրուած ուրիշ նամակ մ'ալ կը հաստատէ վերոյիշեալ տեղեկութիւնները՝ աւելցնելով թէ «Լուսաւորչեան Ընկերութիւն»ը պաշտպանն է Նաեւ Նորաբաց աղջկանց վարժարանին, թէ 17

Հոգի 41 բաժին գրուած են 492 գրուչի վճարումով, եւ այլն (Մասիս, կ. գ. 1852 թ. 50: — Հմմտ. Նոյեան Աղաւնի, անդ՝ թ. 41):

Ընկերութեանս հիմնումը 1851ին կը դնէ առանց ապացոյցի, «Սկսնակ բանասէր» 1898ին գրելով·— «(1851) Լուսաւորչեան Ընկերութիւն ի նպաստ աղջկանց վարժարանի Եոզգատի» (Արեւելք, կ. գ. 1898 թ. 3854):

Ժամանակակից հայ թերթերու վկայութիւնը կը փաստէ Ընկերութեան հիմնումի տարին 1852 ըլլալը:

Աղջկանց վարժարանը կ'երեւայ շատ չէ տեւած. Թղթակից մը 1873ի գարնան ցաւ կը յայտնէ որ «Եոզգատի նման բազմահայ տեղ մը տակաւին աղջկանց վարժարան չէ հաստատուած» (Հայրենիք, կ. գ. 1873 թ. 150, Մայիս 26):

2· ՕՀԱՆՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒ°Ն (1870 1)

Եոզգատի մէջ 1873ի Մայիսին դպրոց մը կայ «Օհաննեան» անունով, որ բացուած է 1872ին: Թղթակից մը 1873ի գարնան դըպրոցը ինկած վիճակի մէջ կը ներկայացնէ եւ կ'ըսէ որ անոր վիճակը «պատիւ չի բերեր պաշտպանաց» (Հայրենիք, 1873 թ. 150· Հմմտ. նաեւ թ. 162):

Ո՞վ են այդ «Պաշտպանները»: Մեզի կը թուի թէ «Օհաննեանը՝» Ընկերական վարժարան մըն է, ինչպէս «Վահանեան»ը՝ բա–

*ցուած նոյնանուն* — Օհանեան — *Ընկերութենէ մը, որ կրնայ գոյութիւն ունեցած ըլլալ* 1870—1*ին: Արդեօք Եոզղատի ծանօթ* Օհան Զորպաճի՞ն *է հիմնադիրը այդ Ընկերութեան: Զենք գտած լուսաբանութիւն մը, բայց գիտենք որ դպրոցի պաշտպաններէն մին է ինքը՝ Օհան Զորպաճին* (*Հմմտ.* Հայրենիք, 1873 *Թ.* 162):

3· ՎԱՀԱՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

*Հիմնուած է* 1872*ին՝ նախաձեռնութեամբ Արիստակէս Եպ. Դերձակեանի, որ Եոզղատ գտնուած ատեն բացումը կատարած է նաեւ համանուն* «Վահանեան» *վարժարանի* (Հայրենիք, 1873 *Թ.* 150: — Թէրճիւմանը էֆքեար, *Կ. Պ.* 1884 *Թ.* 1941):

Միհրան Քիւրքճեան 1882*ին Եոզղատէն կը գրէ որ Վահանեան Ընկերութիւնը* 1872*ին հիմնուած է «քանի մը դպրոցասէր ազգայնոց ջանիւք» եւ թէ համանուն վարժարանը լաւ ընթացքի մէջ է* (Փունջ, *Կ. Պ.* 1882 *Թ.* 1673):

1884*ին Ընկերութիւնը կը շարունակէ կառավարել իր վարժարանը* (Մասիս, *Կ. Պ.* 1884 *Թ.* 3594):

1885*ին Ընկերութիւնը կը խորհի իր վարժարանը միացնել* Մայր — դպրոցի *հետ. տարեկան ծախքն է* 30 *ոսկի. աշակերտներու թիւը՝* 90 (Մասիս *Շաբաթաթերթ, Կ. Պ.* 1885 *Թ.* 3773):

### 4· ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1876)

Կազմուած է 1876ին։ 1881ին թուլցած կ'երեւայ (Թէրճ. Էփքիար, 1881 թ. 1160) սակայն յաջորդ տարին՝ գործօն է, ինչպէս կը վկայէ թղթակիցը.— «...Ամէն Երեքշաբթի եւ Կիւրակէ օրերը թանգարանը (Ընթերցարան) կը բանան եւ հոն լրագիր կ'ընթեռնուն. վեց տեսակ լրագիր կու գայ հոս։ Կը գովենք Անձնուէր Ընկերութեան ջանքն եւ յարատեւութիւնը» (Մասիս, 1882 թ. 3290)։

Ընկերութիւնը 1883ին իր եօթներորդ տարին կը փակէ հանդէսով, ճառեր ու երգեր տեղի կ'ունենան, կը բաժնուի շաքար ու պտուղ. Ընկերութիւնը կ'ունենայ կարեւոր մուտք մը։ Այդ առթիւ կը պարզուի Ընկերութեան նպատակը.— «Զրի դատախօսութեամբ, լսարաններով եւ այլ ճարտար միջոցներով ժողովրդեան բարոյական եւ իմացական կարողութիւններն մշակել, չքաւոր գիւղացականաց վարժարանական պէտքերն լնուլ եւ երբ իւր դրամական վիճակը ներէ՝ կեդրոնական գիշերօթիկ վարժարան մը հիմնել քաղաքիս մէջ, ուր աղքատութեան զլացումը մահամերձ վիճակի մէջ կը տարուբերի» (Բիւրակն, Կ. Պ. 1883, էջ 266)։

Ընկերութիւնը 1883ի վերջերը Վերի Գեղամանատան կից Թանգարան մը կը կառուցանէ եւ իր տարեկան Մուտքը Մայր — վարժարանին կը յատկացնէ. 1884ին ունէր

35 անդամ եւ 60 ոսկի դրամագլուխ (Թէրճէմանը էֆքեար, 1844 Թ. 3682)։

5. ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1876—8)

Կը յիշուի 1881ին լոկ անունով եւ արդէն իր «շքեղ փայլունութիւնը լիովին կորսնցուցած» է (Թէրճ. էֆքիար, 1881 Թ. 1160)։

6. ԼՈՒՍԱՍՓԻՒՌ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1876—7)

Հիմնած են Վահանեան վարժարանի սաները, հաւանօրէն 1876—7ին։ 1881ին կազմալուծուած էր եւ Ընկերութեան 3000 դահեկանը Մատթէոս խանենանի վրայ կը մնար (Թէրճէ. էֆքիար, 1881 Թ. 1160։ — Մասիս, 1881 Թ. 3683)։

7. ԽՈՐԵՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

Թղթակցի մը համաձայն հիմնուած է 1878ին եւ բացած Խորենեան ընկերական վարժարանը։ Թէ՛ Ընկերութիւնը եւ թէ՛ վարժարանը կը պահէին իրենց գոյութիւնը 1884ին «Վարժարանը ունէր 150 աշակերտ (Մասիս, 1884 Թ. 3594)։ 1885ին ինկած էր մակարդակը վարժարանին՝ վերածուելով Ծաղկոցի մը, որ ունէր 30 աշակերտ (Մասիս, 1885 Թ. 3773)։

8. ՍԵԹԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879,

Թղթակից մը 1885 Մայիս 14ին կը գրէ Եոզղատէն. «Սեթեան Ընկերութիւնը կազմուած է 1879 Մայիսին, Նպատակ ունենա—

լով Եոզղատու վիճակին՝ այն է Պոզուքի նահանգին կեդրոնը վարժարան մը բանալով վիճակայնոց երկրագործութիւն եւ այլ օգտակար ուսմունք ուսուցանել։ Ընկերութեան Գործադիր ժողովն գործակատար կարգեց իրեն զՊ. Մ. Սէմէրճեան, որ Պոզուքի գիւղերն երկար ատեն վարժապետած է։ Աւերակցի Դանիէլ վարդապետի հետ երկու տարիէն աւելի հանդանակութեան համար պտտեցաւ... տարիի մը չափ եւս Հայաստանի գիւղերը շրջագայեցաւ։ Հանդանակեալ գումարով Պոզուքի գիւղերէն Դէրգիկի մէջ 190 ոսկւոյ տուն մը գնելով՝ 1882 Փետր. 1ին դպրոց մը բացուեցաւ, տարեկան 20 ոսկի ծախք յատկացնելով։ Մինչեւ ցարդ հանդանակեալ գումարն 51,335 դահեկան է ... Այս գումարին մէկ մասն Քաղ. Ժողովոյ անդամոց ոմանց, մէկ մասն գործակատարին եւ մէկ ուրիշ մասն ուրիշ մարդու մը վրայ կը կենայ եւ յայտնի չէ թէ ե՞րբ պիտի իրականանայ նպատակը եւ ի՞նչ արդիւնք պիտի ունենայ» (Մասիս, 1885 թ. 3773, էջ 1092)։

### 9. ԱՐՄԵՆՈՒՀԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1881)

Եոզղատի Փոխ-Առաջնորդ Ղեւոնդ Եպ. Շիշմանեան 1881ին հիմնած է Արմենուհեան Ընկերութիւնը (Փունջ, 1881 թ. 1673)։

Փունջ (1883 թ. 1779) 1883ին կը գրէ. — «Եոզղատէն մեր թղթակիցն կը ծանուցանէ մեզ թէ Գեր. Տ. Ղեւոնդ Սրբազանի անձանձիր ճգամբ կազմեալ Արմենուհեան

*Ընկերութիւնն վերջին օրերս սկսած է մեծ յառաջդիմութիւն ընել եւ իր անդամուհեաց թիւն հասուցած է հազարի մօտ. Թէ քիչ ժամանակի մէջ 80 լերայի արդիւնք գոյացուցած ըլլալով՝ մտադիր է քիչ օրէն վիճակահանութեան դնել ձեռագործներն եւ կարեւոր արդիւնք մը հայթայթել ի նպաստ վարժարանին օրիորդաց: Այն Ընկերութիւնը, կ'ըսէ, նպատակ ունի չքաւոր սանուհեաց հանդերձն ու գրական պիտոյքը հայթայթել եւ եթէ դրամական վիճակը ներէ՝ բարձր դասերու համար ձեռնհաս վարժուհիներ բերել կամ պատրաստել տալ: Մտադիր է մինչեւ 80 լիրայով անշարժ կալուած մը գնել յօգուտ վարժարանին: Ընկերութեան Գործադիր Ժողովոյ անդամքն են.*

*Տիրուհի Խանձեան, Մարթա Ադամեան, Տիրուհի Արսլանեան, Թագուհի Քէշիշեան, Նուա Փափազեան, Տիրուհի Թէմիրեան, Մարիամ Սարաձեան, Եղիսաբեթ Ուղուրլուեան Ագապի Կիւլպէնկեան, Ագապի Տոնիկեան, Մարիամ Թէքիրեան:*

*Ընկերութեան նախագահն է Տէր Ղեւոնդ Սրբազան, իսկ Ատենադպիր՝ Տէր Վարդան Արգարեան»:*

*Ուրիշ թղթակցի մը համեմատ՝ Արմենուհեաց Ընկերութիւնը հաստատուած է* Տէր Վարդան Քհնյ. Արգարեանի *ջանքերով, պաշտպանն է* «Արմենուհեաց Վարժարանի». *չինած է 6 խանութ՝ իբրեւ հասութաբեր*

կալուած, բայց 1884ին «վախճանած»ի պէս է (Մասիս, 1884 թ. 3594) ։

## 10. ՄԱՍՆԱՃԻՒՂ «ՄԻԱՑԵԱԼ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆՑ» (1881)

Պոլսոյ «Միացեալ Ընկերութիւնք Հայոց»ի Մասնաճիւղ մը կը կազմուի Եւդոկիոյ մէջ 1881 Յունիսին եւ բաւական մեծ գումար մը կը հաւաքէ ի նպաստ «Միացեալ»ին (Մասիս, 1881 թ. 2973) ։

## 11. ԳՐԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1885)

1885ի Յունուարի սկիզբը հիմնած են «Վահանեան Վարժարանի» հին ու նոր սաները ։ Ընկերութեան նպատակն է «Հիմնել Վահանեան Վարժարանի մէջ Մատենադարան մը եւ ճոխացնել զայն օգտակար գրքերով, հանդէսներով եւ լրագիրներով. օգնել բաւ կարքի վարժարանի ուսումնական պիտոյից» (Թէրճ. Էֆքեար, 1885 թ. 2344) ։

Ընկերութեան անդամներն ու բաժանորդները ամէն Կիրակի ու տօն օրեր կը հաւաքուին վարժարանի սրահը. կը ճառեն, ազգային երգեր կ'երգեն, կը նուագեն եւ ընթերցանութեամբ կը պարապին ։ Իր նիւթական աղբիւրներն են ներքին եւ պատուոյ անդամներու բաժիններն եւ նուէրները ։ 1885 Մայիս 29ին Ընկերութեան բացումը կը կատարէ իր Լսարանին եւ Մատենադարանին՝ նախագահութեամբ Միհրան Քիւրքճեանին եւ ճառախօսութեամբ ուսուցիչ Զաքարիա Քէսիքպաշեանի ։ Կը խօսին նաեւ

*Գործ. ժողովի Ատենապետ Յովհաննէս Գասարճեան, Սմբատ Խայերեան եւ Իսահակ Ներսէսեան. տեղի կ'ունենան երգեցողութիւններ, Ընկերութիւնը կը ստանայ նուէրներ (Անդ)։*

12. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1885)

*Կը յիշուի* 1885 *Յունիս* 3*ին* (Փունջ, 1885 *թ.* 1946), *ուր կ'ըսուի թէ հանդէսի մը ներկայ եղող ժողովուրդը «կարեւոր գումար մը նուիրելով* Ուսումնասիրաց Ընկերութեան, *որ օր ըստ օրէ յառաջդիմելու վրայ է յօգուտ Եօզղատու Հայութեան»։* Նորակազմ *Ընկերութիւն մը կ'երեւայ՝ հիմնուած գուցէ* 1885*ի սկիզբները։ Ուրիշ կողմէ ծանօթութիւն մը գտած չենք։*

13. ԴՊՐՈՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1885)

1886 *Փետր.* 11*ին Եոզղատէն կը գրեն Պոլսոյ* Փունջին.— *«Քաղաքիս ձեռնհաս եւ բանիբուն ազգայիններէն կազմեալ* «Դպրոցական Միութիւն»*ը Արմենուհեաց վարժարանի համար Տիկին Նազգաշեան անուն վարժուհի մը բերել տուաւ Պոլսէն։ Շնորհակալեաց եւ քաջալերութեան արժանի են յիշեալ Միութեան այս եւ այսպիսի ազգօգուտ գործք»* (Փունջ, 1886 *թ.* 1982)։ — *Ընկերութիւնը հիմնուած կ'երեւայ* 1885*ին։ Կը կոչուի նաեւ Դպրոցական* Ընկերութիւն (Մանզ. Էփքիար, Կ. Պ. 1886 *թ.* 5809)։

14· ԱՂՔԱՏԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1889)

1889ի գարնան հիմնուած է· 1889 Յունիս 6ին «Նորոգ հաստատեալ» կ'ըսուի (Փունջ, 1889 թ· 2156)։ Կարճ ժամանակէն 50–60 ոսկի կը հաւաքէ եւ նուէրներ՝ օգնելու համար «աղքատներուն, որբերուն, անոք եւ անօգնական այրիներուն ու թշուառներուն» (Անդ)։ Կը կոչուէր նաեւ «Աղքատաց Ընկերութիւն» (Մանզումէի էֆքիար, 1889 թ· 6234)։

Անուանափոխութիւն մը կ'ունենայ յետոյ՝ կոչուելով «Աղքատախնամ Ընկերութիւն» (Բիւզանդիոն, Կ· Պ· 1897 թ· 289)։

15· ՃՇՄԱՐՏԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1889)

Կը յիշուի 1889 Յուլիսին։ Գուցէ նոյն տարւոյ սկիզբները հիմնուած ըլլայ (Տե՛ս Մանզ. էֆքիար, 1889 թ. 6284)։

16· ՅԱՌԱՋԴԻՄԱՍԻՐԱՑ ԱԿՈՒՄԲ (1908)

Բացուած է 1908ի Սահմանադրութեան առթիւ (Բիւզանդիոն, 1908 թ· 3709)։

17· ԵՕԶՂԱՏԻ ՀԱՅՐԵՆԱԿՑ· ՄԻՈՒԹԻՒՆ (1918—9)

Կազմուած կ'երեւայ 1918–9ին, Պոլսոյ մէջ։ 1919 Ապրիլին թատերական ներկայացում մը կու տայ, որուն ամբողջ հասոյթը պիտի յատկացուի «Եօզղատի 3000է աւելի որբ ու անպաշտպան թշուառներուն» (Ժամանակ, Կ· Պ· 1919 թ· 3487։— Հմմտ· թիւ 3580)։

Միութեան անդամներէն կը յիշուին. Սմբատ Թումաճեան, Աւետիս Թումաճեան, Աստուր Ն. Սէմէրճիպաշեան, Գէորգ Ա. Թ. Գարագաշեան, Բարունակ Մէնչիկեան, Նազարէթ Մեծիկեան, Սամուէլ Թումայեան, Տիգրան Պաղրճեան, Աւետիս Գասպարեան, Կարապետ Թ. Ս. (Ժողովուրդի Ձայնը, Կ. Պ. 1920 թ. 599):

## 18. ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1920)

Կիլիկիա ապաստանած Եոզղատցիներ Ատանայի մէջ 1920ին սկիզբը կը կազմեն «Հայրենակցական Միութիւն» մը յանուն Եոզղատի եւ շրջանի գաւառակներու (Պողազլեան, Ալաճա, Ակտաղմատէն) նպատակ ունենալով ամոքել կարօտեալներու թշուառութիւնը, ի մի խմբել բոլոր հայրենակիցները եւ բնակեցնել նորակազմ Հայաստանի մաս կազմող արդաւանդ հողամասի մը մէջ (Ժամանակ, 1920 թ. 3807):

## 19. ԵՈԶՂԱՏԻ «ԲԱՐԵՆՊԱՏԱԿ» ՄԻՈՒԹԻՒՆ (1928)

Հիմնուած է Մարսէյլ (Ֆրանսա) 1928ին: Իր Նպատակը.— «Մեր հայրենակիցները կապել հայ թատրոնին» (Յառաջ, Փարիզ 1928 թ. 832):

Կ՚ընեն դասախօսութիւններ ալ: Հրատարակած են «Լոյս» անունով Օրացոյց մը «շահեկան բովանդակութեամբ, գեղեցիկ պէսպիսութիւններով» (Անդ):

### 20· ԵՈԶԿԱՏԻ ԵՒ ՇՐՋ· ՀԱՅՐԵՆԱԿՑ· ՄԻՈՒԹԻՒՆ (1928)

*Կազմուած է* 1928*ին* Մարսէյլի *մէջ*։ *«Միութեան նպատակն է սերտ յարաբերութիւն պահել բոլոր հայրենակիցներուն հետ*։ *Վարչութեան անդամներն են*·

| | |
|---|---|
| *Ա· Դաչնակեան* | *Ատենապետ* |
| *Ս· Դանիէլեան* | *Ատենադպիր* |
| *Ճ· Գարիպեան* | *Գանձապետ* |
| *Կ· Գայայեան* | *Խորհրդական* |
| *Հ· Այվազեան* | *Խորհրդական* |

(Յառաջ, 1929 *Թ*· 901)։

1929 *Մարտին ունէր սա Վարչ· կազմը*·

| | |
|---|---|
| *Գ· Եարուճեան* | *Ատենապետ* |
| *Հ· Մաճառեան* | *Քարտուղար* |
| *Ս· Էմմիյեան* | *Գանձապահ* |

(Յառաջ, 1929 *Թ*· 911, *Մարտ* 21)։

## ԳԻՒՂԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ
## ՔԷՕՀԼԷՆ ԳԻՒՂ

### 1· ՍՄԲԱՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

1874 *Մայիս* 18*ին կը հրատարակէ* Հայրենիք *անթուակիր թղթակցութիւն մը Եոզղատէն, ուր կ'ըսուի.— «Սար Համզա գիւղի Վարժապետը՝ Մնացական՝ Քէօհլէն գիւղի մէջ, որ Եոզղատէն վեց ժամ հեռու է*, Սմբատեան *անուամբ* Ընկերութիւն *մը կազմելով՝ այսպիսի նեղ եւ անձուկ ժամանակի մը մէջ ուսումնասիրութեան լոյսը կը ջանայ վառ պահել*։ *Ժողովուրդը անոր աջակից է*

*եւ Սարհամգա գիւղի աշակերտներն ալ Թէօհլէն բերելով ձրի կը կերակրէ եւ կը խնամէ եղեր»* (Հայրենիք, 1874 *թ*· 200) ։

## ՓԷՕՀՐԷՆԿ ԳԻՒՂ

### 1· ՌՈՒԲԻՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

*Կը յիշուի* 1878 *Յունիս* 6*ին* (Մանզումէի էֆքեար, 1878 *թ*· 3786) ։

## ԹԵՐԶԻԼԻ ԳԻՒՂ

### 1· ՍԵԹԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Հիմնուած է* 1879 *Մայիսին ընիկ Զէյթունցի Մնացական Սեմերճեանի ջանքերով, որ Պոլոյքի գիւղերուն մէջ երկար ատեն ուսուցչութիւն ըրած է ։ Ընկերութեան նպատակն է· «Պոլուքի* 49 – 50 *գիւղերու մէջ կրթութիւն եւ լոյս ծաւալել եւ ի հարկին երկրագործական վարժարան մը հիմնելով՝ վիճականաց տեսականապէս դաս տալ»* (Մասիս, 1883 *թ*· 3405) ։

*Ընկերութեան գործակատար Սեմերճեան հանգանակութեամբ* 33,727 *դահեկան կը հաւաքէ եւ* 1882 *Փետր*· 1*ին Պոլուքի կենդրոն Թերզիլի գիւղին մէջ* «Սեթեան վարժարան»*ը կը բացուի, որ կ'ըլլայ* գիշերօթիկ *եւ* ցերեկեայ, *ունենալով* 23 *աշակերտ ։ Ընկերութիւնը տարեկան* 20 *ոսկի կը վճարէ վարժարանի ուսուցչին* (Մասիս, 1884 *թ*· 3594) ։

*

# ԿԵՍԱՐԻԱ

## 1· ՀԱՅԿԱԶԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1849 — 51)

Կեսարիոյ Մշակութային Ընկերութիւններու հնագոյնն է «Հայկազեան Ընկերութիւնը», զոր 1858ին հիմնուած կարծած է Արշակ Ալպօյաճեան (Պատմութիւն Հայ Կեսարիոյ Ա· Գահիրէ 1937, էջ 1103), մինչ որ յիշատակութիւնը մեզի ծանօթ է արդէն 1851էն, Պոլսոյ Հայաստանն (1851 թ· 99) կը գրէ· «Կեսարիայէն Դեկտ· 22ին մեզի կը գրեն· — Հայկազեան Ընկերութեան անուամբ քաղաքիս մէջ հաստատուած դպրատանը ընկերութեան հանդէսը ձեզի ծանուցանել ուզեցինք, որ Նոյ· ամսոյ 11ին եղաւ»:

Ուրեմն նախ հիմնուած է Հայկազեան Ընկերութիւնը, յետոյ իրեն անունով դպրոց մը բացուած է: Հետեւաբար Ընկերութիւնը 1851էն աւելի հին է· գուցէ 1849ի առեններն է իր ծագումը, երբ Թալասի «Մամիկոնեան Ընկերութիւնը» կը հիմնուի:

Հայկազեան Ընկերութեան դպրոցի առաջին վարժապետն է Կարապետ Աբրահամեան, որ 1851 Դեկտ· 22ին Կեսարիայէն Պոլսոյ Հայաստանի ըրած վերոյիշեալ թղթակցութեան կից ստանաւորի մը տակ կը ստորագրէ·— «Կարապետ վարժապետ Աբրահամեան Հայկազեան Ընկերութեան Կեսարիոյ» (Հայաստան, անդ):

Սխալ է, հետեւաբար, երբ կը գրէ Ա· Ալպօյաճեան· «1858 Սեպտ· 1ին կը կազմուի Ընկերութիւն մը ի նպաստ Ս· Աստուածա-

ծին Թաղին վարժարանին «Հայկազեան Ընկերութիւն Կեսարիոյ» անունով (Պատմութիւն Հայ Կեսարիոյ, էջ 1103)։ Ո՛չ թէ 1858ին՝ այլ 1849–51ին կազմուած է, ո՛չ թէ դպրոցը նախ գոյութիւն ունեցած ըլլալով՝ անոր ի նպաստ կը կազմուի՝ այլ նախ Հայկազեան Ընկերութիւնը հիմնուած ըլլալով՝ Ընկերութիւնը ինքը կը բանայ Ս. Աստուածածին Թաղին դպրոցը։

Հաւանօրէն 1858ին թոյլցած ըլլալով՝ Ընկերութիւնը վերակազմուած է 1858 Սեպտեմբեր 1ին եւ ոչ թէ նոր հիմնուած։

1851ին գոյութիւն չունէր Պոլսոյ Մասիս թերթը. ան հիմնուած է 1852ին։ Հետեւաբար Մասիսին անծանօթ եղած է 1851ի «Հայկազեան Ընկերութիւն»ը. Մասիս (1858 թ. 535) կը յիշէ 1858ի «Հայկազեան Ընկերութիւն»ը՝ կարծելով թէ նոր հիմնուած է։

Ընկերութիւնը 1858ին կը բանայ նաեւ աղջկանց վարժարան Ս. Աստուածածին եկեղեցւոյ մօտը (Մասիս, 1858 թ. 355), որ 1859ին 100 աշակերտուհի ունէր եւ թղթակիցը շատ փայլուն վիճակի մէջ կը ներկայացնէ զայն 1859 Դեկտ.ին (Մասիս, 1859 թ. 411)։

1858ին Ընկերութեան Վարչութիւնը կը կազմէին 13 հոգի, որոնցմէ Կեսարիոյ մէջ ծնածներն էին.

Գալուստ Թէքէյեան, Մ. Կարապետ Սաղըրեան, Համբարձում Մոստիճեան, Մ. Մկրտիչ Ձերչի Պետրոսեան, Յակոբ Ֆրէն–

կեան, Յակոբ Օհաննեան, Մ. Յովհաննէս Քիւրքճի Եսայեան, Մ. Յովհաննէս Պաշ Պագըրկեաննեան:

Իսկ Պոլսոյ մէջ եղողներն էին.

Գէորգ Զարդարեան, Խըտիր Խըտըրեան Մկրտիչ Թաշճեան, Մ. Յակոբ Քուլաքսըզեան, Ստեփան Նահապետեան (Մասիս, 1858 թ. 355):

Ընկերութեան երկսեռ վարժարանը, մանաւանդ աղջկանց բաժինը փայլուն յառաջդիմութիւն ըրած է մէկ տարուան մէջ, ինչպէս կ'իմացնէ թղթակից մը 1859ին (Մասիս, 1859 թ. 411, Դեկտ. 10):

Անծանօթ կը մնայ թէ մինչեւ ե՞րբ պահած է իր գոյութիւնը այս Ընկերութիւնը, զի 1859էն վերջ գտած չենք յիշատակութիւն մը: Ընկերութեան վարժարանը շարունակած կ'երեւայ «Հայկեան վարժարան» անունով (Տե՛ս այս մասին՝ Պատմ. Հայ Կեսարիոյ, Ա., էջ 1104):

### 2. ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860)

Հիմնուած է Պոլսաբնակ Կեսարացիներէ 1860 Դեկտ. 11ին՝ նպատակ ունենալով Կեսարիոյ մէջ աղջկանց վարժարան մը բանալ, կամ՝ ինչպէս Մասիսի թղթակիցը կը գրէ. «Կեսարիոյ մէջ աղջկանց դաստիարակութեանը համար օրինաւոր դպրոց մը հաստատել՝ պէտք եղած դասատուներն եւ վարժուհիներն Պոլսէն ղրկելով» (Մասիս, Կ. Պ. 1860 թ. 464):

Պոլսոյ մէջ կ'անդամագրուին բազմաթիւ անձեր՝ վճարելով մեծագումար դրամ, ինչպէս՝

| | |
|---|---|
| Մ. Մանուկ Մանուկեան | 15000 ղրշ. |
| Գրիգոր Բէլէկեան | 5000 ղրշ. |
| Յովհաննէս Ս. Կիւմիւշեան | 5000 ղրշ. |
| Մ. Սարգիս Զամքերթենեան | 5000 ղրշ. |
| եւ այլն, որուն գումարը կ'ըլլայ | 54·450 ղրշ. |

(Մասիս, անդ): 1862ին այս գումարը բարձրացած էր 77·350 ղուրուշի (Միւնատիի էրմենիաս, Կ. Պ. 1862 Թ. 136): Իսկ 1863ին նոյն գումարը բարձրացած էր 135·546 ղրշ.ի (Մասիս, 1863 Թ. 579):

1863ի սկիզբները տակաւին բացուած չէր աղջկանց վարժարանը: Ան բացուած կը յիշուի 1864 Փետրուարին (Մասիս, 1864 Թ. 631): Այնպէս կ'երեւայ թէ վարժարանը բացուած է 1863ի ընթացքին:

1866ին Ընկերութեան Ատենապետն է Մ. Մանուկ Մանուկեան, իսկ Գանձապետը՝ Կարապետ Թահթապրունեան: Կեսարացի Տիկին մը 10·210 ղուրուշ կը նուիրէ Ընկերութեան նպատակին համար (Մասիս, 1866 Թ. 729):

1877—8ի պատերազմին Ընկերութեան դրամագլուխը կ'ոչնչանայ, սակայն վարժարանը կրնայ շարունակուիլ կտակներով: Պոլսոյ Լոյս (1878 Թ. 76) կը յիշէ Ընկերութիւնս:

1883ին Ընկերութիւնը քայքայուած է․ Աղջկանց վարժարանը ունի 100 աշակերտու-հի, բայց վարժարանը անօգնական մնացած է․ աշակերտուհիները լոկ չարական կ'եր-գեն՝ տիրացուի առաջնորդութեամբ (Տե՛ս Մասիս, 1883 թ․ 3403)։

Աղջկանց վարժարանը իր գոյութիւնը պահած է մինչեւ 1915, ունենալով յատուկ խնամակալութիւն մը (Տե՛ս Ա․ Ալպօյա-ճեան, Պատմ․ Հայ Կեսարիոյ, Ա․, էջ 1122)։

3․ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1861)

Պ․ Գ․ Տահպաղեան կը գրէ Կեսարիայէն 1862 Նոյ․ 9 թուականով․ «Ակէ մէկ ու կէս տարի առաջ Ընկերութիւն մը հաստատեցին ի Կեսարիա Ուսումնասիրաց անուամբ․․ ազգասէր հիմնադիրները․․․ իրենց նպատակ գրքին ժողովուրդը կրթութեան եւ լուսաւո-րութեան ճամբուն մէջ յառաջացնելու հա-մար պէտք եղած բաները ընկերութեամբ մատակարարել։ Կրնամք ուրախ սրտիւ ըսել թէ մինչեւ հիմա յաջողեցան․․․» (Ծաղիկ, Իզմիր 1862, էջ 426—7)։

Ընկերութեան հաւաքատեղին էր Ս․ Սարգիս եկեղեցւոյ գպրոցը․ Ընկերութիւնը 1862 Հոկտ․ 28ին Ընդհ․ ժողով կը գումարէ․ Հանդիսական բացումը կը կատարէ Ընկե-րութեան Թանգարանին (ընթերցարան) մէջ երգով եւ ճառախօսութեամբ (Անդ)։

Ընկերութեան Ատենապետն է Սիմոն Վարժապետ․ Վերծանութեան Թանգարանը

*իր* կանոնագիրն *ունէր* (Մասիս, 1862 *թ.* 563):

*Ընկերութիւնը ճիւղ մը ունեցած է նաեւ* Պոլիս, *որուն Ատենապետն էր* 1862*ին* Մարտիրոս Մ. Սախթիյաննեան (Մասիս, 1862 *թ.* 547):

*Ընկերութիւնը երկար ատեն չարունակած է իր գործունէութիւնը:* 1875*ին ունէր* իւրանուն դպրոց մը *Կեսարիոյ մէջ: Իր անդամներու թիւն էր* 300: *Կեսարիայէն երիտասարդ մը Ամերիկա ղրկած էր բժշկութիւն սորվելու եւ Կեսարիա դառնալով «իր երկրին մէջ բժշկութիւն ընելու համար»* (Հայրենիք *կ. գ.* 1875 *թ.* 245, *Ապրիլ* 29): *Ընկերութիւնը կը խորհէր* աղջկանց դպրոց *մ'ալ բանալ* (*Անդ*):

*Յաջորդ տարիներու իր գործունէութիւնը անծանօթ է մեզ:*

4. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1861)

*Կազմած են* Պոլսոյ *Կեսարացիք* 1861 *Ապրիլ* 16*ին՝ նպատակ ունենալով Կեսարիոյ մէջ* տպարան մը բանալ (Միւնատիի Էրնիաս, *կ. գ.* 1861 *թ.* 183): *Ընկերութեան գլխաւոր կազմակերպողներն են Մանուկ Արզըեան, Ադաթան Թահթայրունեան, Յովակիմ Ստամպոլլեան եւ Գրիգոր Էվրէնեան:*

*Ընկերութիւնը չէ կրցած իրականացնել իր նպատակը:*

5. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862—3)

*Կը յիշուի* 1865 *Յուլիսին* (Վարագայի Հավատիս, *Կ. Պ.* 1865 *թ.* 197. *Հմմտ. նոյն՝* 1864 *թ.* 115):

6. ԱՐԴԻԻՆԱՐԵՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862—4)

*Հիմնումի տարին չենք գտած. կը յիշուի* 1865 *Յուլիսին՝* ո՛չ իբրեւ նորահաստատ: *Կրնայ* 1862—4*ի միջոցին հիմնուած ըլլալ* (*Հմմտ.* Վարագայի Հավատիս, 1864 *թ.* 115): *Իր նպատակը եղած կ'երեւայ.— Գիշերները ուզողին դաս տալ. «Կիճէլէրի իսթէյէնէ ակըս իթանընա հիմմէթ իթմիյէ պաշլամըշլար տըր»* (Վարագայի Հավատիս, *Կ. Պ.* 1865 *թ.* 197):

*Սահմանադրութեան տարեդարձը հանդիսապէս տօնած է Ընկերութիւնը՝ ճառախօսութիւններով, երգերով ու նուագով. տոմսակներէն Ընկերութեան գանձին ինկած է* 200 *դրշ.* (*Անդ*):

7. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

*Բուն տիտղոսն է.—* «Կեսարիոյ Ս. Կարապետի վանուց Ուսումնասիրական Ընկերութիւն», *որ հիմնուած է* Պոլիս 1868*ի սկիզբը:* Ն. Յակոբ վարդապետ *կը գրէ Պոլսէն* 1868 *Յուլ.* 10*ին Պոլսոյ* Մասիսին.

*«Մայրաքաղաքս բնակեալ Կեսարացի երեւելիներէն քանի մ'ազգասէր եւ բարեսիրտ անձինք այս օրերս բարենախանձ*

եռանդով մը Կեսարիոյ Ս. Կարապետի վանքին մէջ բարեկարգ եւ գիշերօթիկ դպրոց մը բանալով վիճակայնոց աղքատ անտէրունչ պատանեաց կրթութիւն մատակարարելու, անոնց ամէն պիտոյքները միայն իր դրամագլխէն գոյանալիք հասոյթէն հոգալու... Նպատակաւ «Կեսարիոյ Ս. Կարապետի վանուց Ուսումնասիրական Ընկերութեան» անունով ընդհանուր բաժանորդութիւն մը բանալ ձեռնարկած են, զոր Ամեն. Ս. Պատրիարք Հայրն ալ վաւերացնելէն ետքը արդէն բաւական աշխատէր եւ բարենախանձ անձինք իրենց բաժանորդագրութեամբը սկսան քաջալերել յիշեալ Ընկերութիւնը... Ն. Յակոբ Վ. Լուսարար

Ս. Կարապետ Վանից Կեսարիոյ

ի 10 Յուլիս 1868
ի Կոստանդնուպոլիս»

(Մասիս, Կ. Պ. 1868 թ. 857)։

Ընկերութեան բաժնեգինն է կէս արծաթ մէճիտ միանգամ եւ ընդ միշտ (Մասիս Օրաթերթ, 1869 թ. 322)։ Ընկերութեան Ընդհ. ժողովը ընտրած է Տեսուչ ժողով մը առ՝ անձերով.

Յովհաննէս Կիւմիւշեան
Մ. Սարգիս Կիւլպէկեան
Համբարձում Մոստիճեան

Ասոնք պատրաստած են 19 Յօդուածէ բաղկացած Կանոնագիր - Ծրագիր մը (Անդ), որ կ'երեւայ թէ տպուած չէ (Տե՛ս նաեւ

փունջ, Կ. Պ. 1869 թ. 273:— Մանզ. Էփ-քիար, 1869 թ. 983):

*Մինչեւ* 1870 *Ընկերութեան հաւաքած դրամին գումարն էր* 56·010 *ղրշ.*: 1870*ին Վարչ. կազմն էր.*

| | |
|---|---|
| *Յովհաննէս Կիւմիւշեան* | *Ատենապետ* |
| *Կարապետ Յ. Ուլպէկեան* | *Ատենադպիր* |
| *Սարգիս Կիւլպէկեան* | *Գանձապետ* |

(Մասիս, 1870 թ. 949):

*Ուրիշ ծանօթութիւն չենք գտած:*

Տ. ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

*Հիմնուած է* 1869*ին Կեսարիոյ* Սէքէն–ջօնիւ *թաղին մէջ: Հիմնադիրն է* Աւետիս Երէցեան (Մասիս, 1882 թ. 3281):

Ն. Կ. Ջ. *Կեսարիայէն՝ Պոլսոյ* Մանզ. Էփքեարին *կը գրէ* 1871 *Հոկտ.* 29 *թուականով.* «Ասկէ յառաջ *քանի մ'ուսումնասէր անձինք դպրատուններուն այս խղճալի վիճակը... տեսնելով* Լուսաւորչեան *անուն* Ընկերութիւն *մը հաստատեր են նպատակ ունենալով* իրենց ծախսովը ազատ վարժարան մը բանալ *եւ Հայ մանկտին ձրիաբար դաստիարակել... բայց ժողովրդեան մեծ մասը նաեւ Առաջնորդը* բուն իսկ այս Ընկերութեան կործանման աշխատեր են...» (Մանզ. Էփքեար, 1871 թ. 1804):

*Ընկերութեան անդամները* Ս. Գիրքը կը կարդան եւ կը մեկնեն (Մանզ. Էփ., *անդ*): *Այս բանս պատճառ կ'ըլլայ թշնա–*

մութեան իրենց դէմ՝ ըսելով թէ Բոդոֆակա-նութիւն կ'ընէ Ընկերութիւնը (Անդ) :

Ընկերութեան Ատենապետն եղած է Ա․ Երէցեան, որ 1872–4ի ատենները Պոլիս երթալով — Խրիմեան Հայրիկի Պատրիարքութեան միջոցին (Մասիս 1883 թ․ 3403) — Ընկերութեան անունը «Ոսումնասիրական»ի կը փոխուի եւ Հայրիկէն կոնդակ մ'առնելով՝ Կեսարիա կը վերադառնայ Երէցեան եւ կը շարունակէ Ընկերութեան գործունէութիւնը մինչեւ 1883 (Մասիս, 1883 թ․ 3403) :

Ընկերութեան կանոնագրին մէջ իբրեւ նպատակ գրուած է՝ «Աւետարան ծաւալել» (Մասիս, 1883 թ․ 3524) : Կեսարիոյ Քաղաք․ ժողովը Ընկերութիւնը կը խափանէ եւ Երէցեանը Անկիւրիա աքսորել կու տայ (Մասիս, 1883 թ․ 3524 : — Հմմտ․ Մանզ․ Էփ․ 1892 թ․ 6675) :

9․ ··· ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872—3)

Կեսարիոյ մէջ երկար ատեն ուսուցչութիւն ընող Աւետիս Գէորգեանի «Նիւթապէս եւ բարոյապէս օգնելու համար» «խումբ մը Կեսարացիք Ընկերութիւն մը կազմած են» (Ասիա, Կ․ Պ․ 1874 թ․ 22, Ապրիլ 6) : Ե՞րբ․ — որեւէ լուսաբանութիւն չկայ : Հին չ'երեւար : 1872—3ի միջոցներուն կը թուի կազմուած ըլլալ : Զի յետոյ կ'աւելցնէ թըղթակիցը․ «Աւետիս Էֆ․ աւելի խրախուսելով՝ իր ջանքերը կրկնապատկած է» (Անդ) :

Ընկերութեան անունը չի յիշուիր :

10· ԿՐԹԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878—9)

*Իր ամբողջական տիտղոսն է ·* «Կրթասիրական Ընկերութիւն Գաւառային Կեսարիոյ» : *Յայտնի չէ հիմնումի թուականը :* Մանզումէի էֆքեար (1880 *թ ·* 4468) *կը յիշէ զայն եւ կը հարցնէ թէ* «ինչո՞ւ յառաջ չ'երթար մեր Ընկերութիւնը» : *Որմէ յայտնի կ'ըլլայ թէ ան* նոր չէ, *դուցէ բաւական հին է :*

*Սխալ է* Մասիսի *Յօդուածագրին* 1886 Հոկտեմբերին *գրածը թէ Ընկերութիւնը հիմնուած է* «1886էն հինգ տարի առաջ» (Մասիս, 1886, *էջ* 194) : 1881*ին ·* Մանզումէ (1880 *թ ·* 4468) *կը յիշէ զայն* արդէն 1880ին : *Կ'երեւայ թէ* Ալպօյաճեան (*Պատմութիւն Հայ Կեսարիոյ, Ա ·, էջ* 258) Մասիսին *հետեւելով է որ կարծած է թէ Ընկերութիւնը* 1881*ին հիմնուած է : Բացի անկէ՝ որ* Մանզումէի էֆքեար (1880 *թ ·* 4468) *արդէն* 1880*ին* կը յիշէ *Ընկերութիւնս՝ ատկէ զատ անոր սա՛ ձեւով յիշատակութիւնը — «ինչո՞ւ չ'երթար մեր Ընկերութիւնը» — հասկցնել կու տայ թէ* 1880էն առաջ ալ կըրնայ հիմնուած ըլլալ : *Զի* 1880*ին հիմնուած Ընկերութեան մը համար դարմանք չի կըրնար յայտնուիլ* 1880*ին՝ թէ «ինչո՞ւ յառաջ չ'երթար» : Մեր կարծիքով Ընկերութիւնը հիմնուած ըլլալու է* 1878—79*ին :*

Թէրճէմանը էֆքեար (1881 *թ ·* 1041) 1881 *Փետրուարին կը գրէ թէ ·* «*Գիշերօթիկ*–

ցերեկեայ դպրոց մը բանալու համար հիմնուած է Կրթասիրական Ընկերութիւնը»:

1883ին 400 անդամ ունէր Ընկերութիւնը: Իր նպատակն էր «գիշերօթիկ վարժարան մը հիմնել աղքատ մանկտւոյ համար» (Մասիս, 1883 թ. 3403): 1882էն ի վեր բացած էր Ընկերութիւնը Կիրակնօրեայ Վարժարան մը, ուր ձրի դասեր կ'աւանդէր խաչատուր Պաղտասարեան հայ ուսուցիչը (Անդ):

Ընկերութիւնը Պոլսոյ մէջ ալ ճիւղ մը ունէր (Մասիս, 1881 թ. 2962): Պոլսոյ անդամները 1882ին Ընդհ. ժողով մ'ընելով՝ հետեւեալները Երեսփոխան ընտրած էին.

Կարապետ Կիւլպէկեան
Սարգիս Կիւտէնեան
Շնորհք Միթանեան
Կարապետ Սահակեան
Յակոբ Ինսյեթեան
Յակոբ Իսպէչէրեան
Գրիգոր Սերովբեան

(Թէրճէմ. էֆ. 1882 թ. 1446):

Ընկերութիւնը իր նպատակին չէ կրցած հասնիլ, ինչպէս կը տեսնուի Թէրճէմանը էֆքեարի (1887 թ. 5877) մէջ գրուած Յօդուածէ մը, հակառակ անոր որ Ընկերութիւնը կրցած է 400 ոսկիի գումար մը ունենալ:

1888ին Պոլսոյ անդամները Ընդհ. ժո—

ղով կը գումարեն՝ որոշում մը առնելու համար թէ լուծուի՞ թէ շարունակուի Ընկերութիւնը: Կ'որոշուի շարունակել. կ'ընտրուի 11 հոգինոց ժողով մը, որ պիտի վարէ գործը. կ'ընտրուի Դիւանը եւ սա Տնօրէն Վարչութիւնը.

Կ. Վահան Ատենապետ
Ս. Ռ. Կիւտէնեան Ատենադպիր

(Արեւելք, Կ. Պ. 1888 թ. 1224):

Ասկէ վերջ ծանօթութիւն մը չենք գտներ Ընկերութեան մասին:

## 11. ԱՂՔԱՏԱՑ ՀՈԳԱՏԱՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

Մարսէյլի Արմէնիա (1887 թ. 72) կը գրէ 1887 Ապրիլ–Մայիսին՝ «Աղքատաց Հոգատար Ընկերութիւն» վերնագրի տակ. «Ութ տարիներէ ի վեր մի Ընկերութիւն կազմուած է ի Կեսարիա, որ իրեն նպատակ ունի չքաւորներն ու խեղանդամներն ազատել մուրացկանութեամբ շրջելէ եւ մի հիւանդանոց կառուցանել»: — 1887ին տակաւին չէր կրցած կառուցանել հիւանդանոցը (Անդ):

Վտարանդին (Մասիս, 1886, էջ 195) «Աղքատաց Հոգաբարձութիւն» կ'անուանէ Ընկերութիւնս եւ շատ կը գովէ զայն:

Ընկերութիւնը կանգուն էր 1897ին (Մանզում. էֆ. 1897 թ. 6894):

## 12. ՀՈԳԵՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884)

*Ընկերութեան Տնօրէն ժողովի Ատենապետ* Կարապետ Գասապեան *եւ Ատենադպիր* խաչատուր Բ. Այանեան *Կեսարիայէն կը գրեն* 1886 *Սեպտ.* 9 *թուականով.* — *«Իքի սէնէյի միւթէճավուզ տուր քի, Նէֆսի Գույսէրիյեէմիզտէ* «Հոգեսիրաց Ընկերութիւն *Նամընը համիլ պիր չիրքէթ զուհուրա կէլմիշ տիր»* (Մանզումէի էֆքեար, 1886 *թ.* 5772): *Մինչ* Ա. Ալպօյաճեան (*Պատմ. Հայ Կեսարիոյ*, *Ա.*, *էջ* 1258) 1880*ական թուականներուն հիմնուած կը կարծէ:*

*Ընկերութեան ձգտումն է Հայ եկեղեցին հեռացածները վերադարձնել եւ յատուկ դպրոց մը բանալ: Բացած է զայն եւ Հոգաբարձութիւն մ'ալ ընտրուած է անոր համար հետեւեալներէ.*

*Տ. Ստեփան Թահմիզճեան*
*Մ. Յակոբ Սաղըրեան*
*Նազարէթ Ձէրթճեան*
*Սենեքերիմ Մանուկեան*
*Մ. Նազարէթ Գասապեան*

Մասիսի *մէջ* (1886, *էջ* 195) Վտարանդին *կը գրէ որ Հոգեսիրաց Ընկերութիւնը* Կիրակի օրերը քարոզելու համար հաստատուած... *կը քարոզէր երբեմն Տ. Մ. Նիկողոսեան, ուր կը ժողովէին* 180—200 *հոգւոյ չափ... Իր ունեցած դոյն դրամով*

դպրոց մը բանալ *եւ շարունակել կը խոր-հի...»*։

13· ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884—85)

*Կեսարիոյ* քաղաքական երիտասարդները *Ընկերութիւն մը կազմած են* «հոգեսիրական» *նպատակով* (Մասիս, 1886, *էջ* 196)։ *Ո՞րը, ի՞նչ անունով — չի տրուիր լուսաբանութիւն*։

14· ՊԱՐԶԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884—85)

*Կազմած են Կեսարիոյ* Հայ Տիկինները, *նպատակ ունենալով* «Կիրակի օրերը մէկտեղ գալով Ս· Գիրք կարդալ» *եւ* «անպէտ զարդերէ, պանուճանքներէ զգուշացնել գեղեցիկ սեռը» (Մասիս, 1886, *էջ* 195)։

*Հիմնումի ճշգրիտ թուական մը չենք գտած*։

15· ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1885)

*Կազմած են* Կիւմիւշեան Վարժարանի *սաները՝ օժանդակութեամբ* Դանիէլ Սարաֆեան *ուսուցիչին*։ *Շաբաթական անդամավճարն էր 5 փարա*։ *Կրցած է ունենալ բաւական նոր Գրադարան, բնագիտական գործքներ եւ իրեն պէտք եղած դասագրքեր* (Արեւելք, 1898 *թ*· 3523)։

16· ՍԱՆՈՒՑ ԳՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1888)

Ս· Կարապետի Վարժարանի *շրջանակին մէջ կազմուած է՝ մարզելու համար աշա-*

*կերտները* խօսելու, գրելու եւ արտասանելու *մէջ։ Դպրոցի մէջ* գործնական դպրոց *մըն էր այս Միութիւնը օժտուած մասնաւոր կանոններով։* Շաբաթական *այս հաւաքոյթները կը կառավարուէին աշակերտներէն ընտրուած* Դիւանէ *մը, որուն պաշտօնը կը տեւէր տարի մը։ Ան կը պատրաստէր օրակարգը, փոքրիկները ընտրուած կտորներ կ'արտասանէին, իսկ մեծերը ինքնագիր գրութիւններ — հայերէն, թրքերէն, ֆրանսերէն — ընդմիջուած երգերով։ Երկու շաբաթը անգամ մըն ալ տեղի կ'ունենար* վիճաբանական ժողով՝ *նիւթի մը շուրջ։ Դիւանին յարմար դատած գրութիւնները կ'արձանագրուէին — հեղինակին ձեռքով — մասնաւոր տոմարի մը մէջ։*

*Մայիս* 1, *Բարեկենդան, վկայականներու բաշխումի հանդէսներ՝ բոլորն ալ մաս կը կազմէին Գրական Միութեան։ Կեսարիայէն, շրջակայքէն կու գային վայելել այս հանդէսները* (*Տե՛ս* Ընդարձակ Տարեցոյց, *Կ. Պ.* 1928, *էջ* 241)։

*Միութեանս հիմնադիրն էր* Վահան Թիւրքճեան։

## 17· ԽՆԱՅՈՂԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1897)

*Հիմնադիրն է* Տրդատ Եպ· Պալեան՝ *ուսուցչութեան վիճակին բարւոքման համար։ Ամէն ուսուցիչ պատրաստ էր իր թոշակին*

$5^{0}/_{0}$ը թողուլ Միութեան սնտուկին։ Նուագահանդէս, նուէր, կաղանդչէք կը կազմէին Միութեան հասոյթները։ Դրամը պիտի շահագործուէր Վարչական Խորհուրդին յարմար դատած կերպով։ Դրամին բաշխումը պիտի սկսէր 7 տարիէն։ Շահուած գումարին կէսը պիտի բաժնուէր իւրաքանչիւրին բաժինին համեմատութեամբ, $48^{0}/_{0}$ը պիտի բարձուէր դրամագլուխին վրայ, իսկ $10^{0}/_{0}$ը պիտի մնար պահեստի՝ անկար, ծեր եւ հիւանդ ուսուցիչներու համար։ Ուզողը կրնար հրաժարիլ՝ ստանալով իր դրամագլուխը շահով հանդերձ (Բիւզանդիոն, Կ. Պ. 1897 Թ. 105։ — Ծաղիկ, Կ. Պ. 1897, էջ 266)։

Կոչուած է նաեւ «Վարժապետական Միութիւն» (Ծաղիկ, անդ)։

1897, Մայիս 1ին կը սարքէ նուագահանդէս մը (Բիւզանդիոն, 1897 Թ. 141)։

18. ՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1897)

Կը կազմուի Կեսարիոյ Առաջնորդ Տըրդատ Եպ. Պալեանի նախաձեռնութեամբ։ Իր տիտղոսն է. — «Հրատարակչական Միութիւն Ս. Կարապետի Վանուց»։ «Այս Ընկերութիւնը պիտի հրատարակէ կրթական ու բարոյական դասագրքեր» (Բիւզանդիոն, 1898 Թ. 369, Յունուար 12)։ Իր հաշւոյն կը տպուէր գիրք մը Վիեննա, Մխիթ. տպ. եւ երկրորդ մը՝ Զմիւռնիա (Անդ)։

### 19. ԸՆԹԵՐՑԱՏԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1898)

*Կեսարիոյ երիտասարդները հիմնած են* Արամեան աղջկանց վարժարանի *մէկ սրահին մէջ՝ նպատակ ունենալով.*

*Ա. Կեսարիոյ մէջ ընթերցասիրութիւնը տարածել.*

*Բ. Վարժեցնել ժողովուրդը որ լումայ մը յատկացնէ Լրագրի:*

*Երիտասարդ դպրոցաւարտներ կը հաւաքուէին վարժարանը եւ ընթերցումներ կ՚ընէին, իսկ փափաքող շուկայիներուն գրել–կարդալ կը սորվեցնէին* (Բիւզանդիոն, 1859 *Թ.* 775):

1899 *Մարտ* 21*ին* Խնայողական Միութիւնը *եւ* Ընթերցատան Միութիւնը *միանալով կու տան Նուագահանդէս մը եւ Ներկայացում մը՝* Բարեկենդանի Անկուտիները *Թատերախաղով:*

### 20. ԿԵՍԱՐԻՈՅ ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ (1905)

*Հիմնած են* Նիւ Եորքաբնակ *գաղթական կեսարացիները* 1905 *Յունուար* 8*ին*: *Հիմնադիրները* 9 *հոգի են, որոնք իրենց մէջ կ՚ընտրեն անդրանիկ հետեւեալ Վարչութիւնը.*

| | |
|---|---|
| *Աւետիս Մերտինեան* | *Ատենապետ* |
| *Նազար Զպուղեան* | *Ատենադպիր* |
| *Յովակիմ Բոյատեան* | *Գանձապետ* |
| *Յովհաննէս Կէօվճեան* | *Հաշուակալ* |
| *Ճիվան Պէյլէրեան* | *Խորհրդական* |

*Անդամավճարն է ամսական* 25 *սենտ* (*Պատմութիւն Հայ Կեսարիոյ*, *Բ*., *էջ* 1964—1965) :

21. ՀԱՅ ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Կը կոչուէր նաեւ* Ակումբ : *Կազմուած է* 1908*ի Սահմանադրութեան վաղորդայնին* (Արեւելք, 1908 *թ*. 6884, *Օգոստոս* 27) : *Հիմնադիրները* 25 *երիտասարդներ են, որոնք* 5 *մասնախումբերու բաժնուած* — 1. *Քաղաքական*, 2. *Լսարանի*, 3. *Խմբագրական*, 4. *Ներկայացման*, 5. *Գրական Միութիւն* — *սկսած են գործել* :

*Առաջին ոգեւորութեամբ դրամ եւ ջանք չի խնայուիր* · *ամսական կանոնաւոր վճարումներէն զատ՝ անդամները բացառիկ զոհողութիւններ ալ կը կատարեն* (Բիւզանդիոն, 1909 *թ*. 3726. 1910 *թ*. 4096) :

*Սակայն երկար տեւած չէ* :

22. ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Կազմուած է* 1908*ին եւ* 200 *ոսկիի չափ բաժանորդութիւն մը ապահովելէ յետոյ՝ անմիջապէս բացած է մասնաւոր դպրոց մը երկու ուսուցիչներով եւ* 100*է աւելի աշակերտներով* : *Միութիւնը կը հոգայ դպրոցական բոլոր ծախքերը, հագուստ կապուստ աղքատ աշակերտներու* (Բիւզանդիոն, 1909 *թ*. 3726) :

*Ընկերութեան կեանքը շատ կարճատեւ*

*Կ՚ԸԱ-յ․ իր դպրոցը փակուած է 1909ին* (Բիւզանդիոն, 1909 *թ*․ 3931)։

### 23․ ԳԻՆԵԹՈՂԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Անունէն յայտնի Կ՚ԸԱ-յ նպատակը* — Գինեմոլութիւնը արմատախիլ ընել։ *Անդամները կու գային ամէն իրիկուն ընթերցումով պարապելու Ընկերութեան կենդրոնատեղին․ լսելու շահեկան քարոզներ, բացատրութիւններ* (Բիւզանդիոն, 1909 *թ*․ 3951)։

*Կազմուած է 1908ի Սահմանադրութեան յաջորդ օրերուն* (Մանզ․ էփ․ 1908 *թ*․ 2262, *Նոյ*․ 9։ — Բիւզ․ 1909 *թ*․ 3726)։

### 24․ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

Կիւմշեան Վարժարանի նախկին սաները *կազմուած*։ *Միութեան նպատակն էր վարժարանին ուղղութեան հետեւիլ, իրենց միջոցներով օժանդակել անոր եւ ջանալ նորանոր աղբիւրներ ստեղծել* (Բիւզանդիոն, 1908 *թ*․ 3726)։

### 25․ ՀԱՅԱԽՕՍԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908—1909)

*Կազմակերպած է* Գաբրիէլ Թագւորեան՝ *նպատակ ունենալով* հայերէն լեզուն ընդհանրացնել տաճկախօս բնակչութեան մէջ։ *Իրենց ծրագիրն էր․ Ատենախօսութիւն, ներկայացումներ, ընթերցումներ կազմակերպել* (Բիւզանդիոն, 1909 *թ*․ 3726)։

26· ՍԱՆՈՒՀԵԱՅ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*Կազմած է* Տիկին Ադաւնի Սարգիսեան 1910*ին* (Ազատամարտ, *Կ. Պ.* 1910 *թ.* 226, 456, 528) :

27· ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1912—1913)

Միացեալ Ուսումնարանի *շրջանակին մէջ կազմուած է. եւ հրատարակած խմբագրական թերթ մը՝* Նոր Սերունդ :

28· ԿՐԹԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1914)

Ժամանակ (*Կ. Պ.*, 1914 *թ.* 1764, *Ապրիլ*) *կը գրէ. «Կեսարիոյ երկսեռ հայ վարժարաններուն օգնելու նպատակով* Պոլ–սեբնակ *Կեսարացիներու նախաձեռնութեամբ* կազմուած Կրթական Ընկերութեան *Ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ... վաւերա–ցում* Ծրագրի...» : — *Աւելի տեղի ծանօ–թութիւն չունինք* :

29· ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

Պոլսաբնակ *Կեսարացիները* 1918*ի վեր–ջերը կազմած էին* Հայրենակցական *մը* (*ՏԷ՛ս* ժամանակ, 1919 *թ.* 3439, *Յունուար–փետրուար*) : *Նոյնը կը յիշուի յետոյ ալ* «Կե–սարական Միութիւն» *անունով* (Ժամանակ, 1919 *թ.* 3545, *Յունիս*) :

30· ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

1914*ի Յունիս–Յուլիսին կը ջանային կազմել թէ՛ Պոլսոյ եւ թէ Կեսարիոյ մէջ*

դտնուող Ս․ Կարապետի բարձրագոյն Շըրջանաւարտները։ Նախկին Սան մը կը խոստանար նուիրել Միութեան 10,000 ֆրանք (Ժամանակ, 1914 թ․ 1852, Յուլիս)։

Կ՚երեւայ թէ չեն կրցած կազմել 1914ին։ Զայն կը կազմեն Ա․ Ընդհանուր պատերազմէն վերջ։ 1919 Օգոստ․ 9ին կը գրէ Ժամանակ․ «Կեսարիոյ Ս․ Կարապետի Սանուց Միութիւնը երէկ... իր առաջին գումարումը ունեցաւ եւ որոշեց ամէն կերպով ջանալ վանքի վարժարանին վերաբացումին»։ Միութիւնը առժամանակեայ Դիւան մը կ՚ընտրէ հետեւեալներէ Կարապետ Աբրահամեան, Յովհաննէս Պօղոսեան, Դոկտ․ Գէորգ Վարդերեսեան (Ժամանակ, 1919 թ․ 3603, Օգոստոս 9)։

### 31․ «ԱՐԳԷՈՍ» ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Կազմուած է Ատանայի մէջ 1919 Յուլիս-Օգոստոսին։ Ժամանակ (1919 թ․ 3612) կը գրէ․ «...Կեսարիոյ եւ շրջականներու, ինչպէս նաեւ Պօղազլեանի եւ Շար-Գըշլայի վերադարձող հայ ժողովրդեան խեղճ վիճակը մեզ մղած է կազմել Ատանայի մէջ «Արգէոս» Հայրենակց․ Միութիւն»ը... Միութիւնը պիտի աշխատի բարուոքելու մեր հայրենիքի բնիկներուն վիճակը...»։ Միութեան Ատենապետն է Դոկտ․ Յովհաննէս Արսլանեան (Անդ)։

32․ ՀԱՅՐԵՆԱԿՑ․ ՄԻՈՒԹԻՒՆ (1920)

Հալէպի *մէջ կազմուած է ։ Իր ամբող-ջական յորջորջումն է ․* — «Կեսարիոյ եւ Շըր-ջակայից Հայրենակց․ Միութիւն» , *որ կազ-մուած է* 1920*ին , որուն գլխաւոր նպատակն էր ․* «Օգնել նիւթապէս եւ բարոյապէս իրեն կարողութեան ներած չափով կարօտ եւ որ-բեւայրի հայրենակիցներուն» (*Պատմ․ Հայ Կեսարիոյ ․ Բ․ էջ* 1990—91) ։

33․ ՀԱՅՐԵՆԱԿՑ․ ՄԻՈՒԹԻՒՆ (1924)

Դամասկոսի *մէջ* 1924*ին կազմուած է* «Դամասկոսի Կեսարացւոց Հայրենակցական Միութիւն» *մը ։ Իր նպատակը եղած է նման մերիններուն* (*Տե՛ս Պատմ․ Հայ Կեսարիոյ ,* *Բ․ էջ* 1991) ։

34․ ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1924—1926)

«Բէյրութի Կեսարիոյ Աղքատախնամ Ընկերութեան» *հիմնումի թուականը չէ ճշդուած* (*Տե՛ս Պատմ․ Հայ Կեսարիոյ , Բ․* 1991—92) ։

35․ ԿԵՍԱՐ․ ԵՒ ՇՐՋ․ ՀԱՅՐԵՆԱԿՑ․ ՄԻՈՒԹԻՒՆ (1925)

Եգիպտոսի *կեսարացիները կոչի մը ըն-թացք տալով՝* 1925 *Հոկտ․* 24*ին խորհըր-դակցական ժողով մը կ՚ունենան՝ Ատենա-*

պետութեամբ Վահան Թէքէեանի եւ Ատենադպրութեամբ Մանուէլ Պէյլէրեանի, ուր Վահան Թէքէեան կը ներկայացնէ Կեսարիոյ մէջ տիրող տխուր կացութիւնը. Ներկաները կ'որոշեն կազմել Հանգանակիչ Յանձնախումբ մը, կազմել նաեւ Ընկերութիւն մը՝ Կեսարիոյ եւ Շրջակայից Հայրենակցական Միութիւն անունով: Հայրենակցականը իր վերջնական կազմը կը ստանայ 1926 Մայիս 1ին գումարուած ժողովի մը մէջ, որ կը կազմէ նաեւ Միութեան Կանոնագիրը: Միութեան նպատակն էր.

Ա. Արտասահմանի մէջ եւ ամենուրեք ցրուած Կեսարացի Հայրենակիցներուն միջեւ միութեան կապ մը հաստատելով իրարու եւ հայրենարնակ Հայ ժողովուրդին օգտակար հանդիսանալ.

Բ. Օգնել Կեսարիոյ եւ Շրջակայից մէջ գտնուող Որբանոցներուն, վարժարաններուն եւ ի հարկին կարօտ ազգայիններուն՝

Գ. Յունաստան, Սուրիա, Եգիպտոս եւ այլուր ապրող Կեսարացիներուն դէպի Հայաստան ներգաղթը դիւրացնել եւ լծուիլ Հայաստանի վերաշինական աշխատանքներուն՝ հիմնելով այնտեղ Նոր Կեսարիա մը»:

Գահիրէի Կեսարիոյ եւ Շրջակայից Հայրենակց. Միութիւնը 10 տարիներ կը հետապնդէ իր նպատակներուն իրագործումը: Առաջին Վարչութեան անդամ ընտրուած են 1926 Մայիս 1ին.

| | |
|---|---|
| *Վարդան Վարդ. Խաչերեան* | *Ա. Ատենապետ* |
| *Բարսեղ Պալըղճեան* | *Բ. Ատենապետ* |
| *Մանուէլ Պէյլէրեան* | *Ա. Ատենադպիր* |
| *Բարունակ Ճէմալեան* | *Բ. Ատենադպիր* |
| *Յակոբ Մարտինեան* | *Գանձապահ* |
| *Միսաք Լաչինեան* | *Հաշուակալ* |
| *Յարութիւն Գութնուեան* | *Խորհրդական* |

*Յաջորդ Վարչութիւնները, որոնց անձնակազմը տուած է Պատմութիւն Հայ Կեսարիոյ* (*Բ. էջ* 1985) *իրենց հողածութեան տարրկայ ըրած են Կեսարիոյ մէջ ապրող Հայութեան բեկորները եւ որբերը կրցած են արտասահման փոխադրել: Այս որբերը տեղաւորուած են* Բէյրութի Թէլէկեան-Միսուան Որբանոցը (*Անդ՝ էջ* 1987) :

*Միութիւնը* 1932*ին վերջ ինքզինքը կը նուիրէ* Նոր Կեսարիոյ *շինութեան գործին* :

## ԳԻՒՂԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ

### ԹԱԼԱՍ ԳԻՒՂ

#### 1. ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1849)

Ա. Ալպօյաճեան (*Պատմութիւն Հայ Կեսարիոյ*, *Ա. էջ* 1160) *յիշելէ յետոյ թէ* 1848*ին* Թալասցիները *դպրոցի մը շէնք կը կառուցանեն՝ կ'աւելցնէ. «Այս վարժարանին ի նպաստ կը կազմուի նաեւ Կ. Պոլսոյ մէջ* նոյն տարին իսկ, *Թալասցի պանդուխտ ազգայիններու*

*ժամանակցութեամբ* Մամիկոնեան Ընկերութիւնը, որ 1848էն *վարժարանին բերաւ կարեւոր օժանդակութիւն մը»*:

*Կ՚երեւայ թէ Ալպօյաճեանի անծանօթ եղած է Ընկերութեան* տպագրուած Կանոնագիրը, *որ ունի իբրեւ* Ընկերութեան հիմնադրութեան թուական — 1849 Յունուար 1: *Կանոնագրութեան այդ գրքոյկը տպուած է* հայերէն *եւ* թրքերէն: *Աչքիս առջեւն է հայերէն օրինակը, որ տպուած է Կ. Պոլիս եւ ունի սա ճակատը.*

«Կանոնագրութիւն Մամիկոնեան Ընկերութեան հաստատեալ 1849 Յունուար 1»:

*Հետեւաբար սխալ է Ալպօյաճեանի կարծիքը թէ այս Ընկերութիւնը* 1848*ին հիմնուած է*:

*Ընկերութեանս* 1849 *Յունուար* 1*ին հիմնումը կը հաստատէ նաեւ* ժամանակակից *հայ թերթը՝ գրելով* 1849*ին*. «*Այս* (*Մամիկոնեան*) *Ընկերութիւնը* այս տարի Յունվարի 1ին սկսաւ *ազգային կրկին ժողովոյ տնօրէնութեամբ*» (Հայաստան, 1849 *Թ*. 178, *Նոյ*. 26):

*Ընկերութիւնը արդէն* 1849 *Յունուար* 1*ին ունեցած է* երկու Վարչութիւն, *որոնք* «Խորհրդական Անդամք» *կը կոչուէին. մին* Պոլիս *եւ միւսը* Կեսարիա (*Թալաս*): *Պոլսոյ Վարչութեան կազմը հետեւեալն է.*

| | |
|---|---|
| Յովհաննէս Կ. Այվատեանց | Նախագահ |
| Դաւիթ Սեթեան | |
| Գէորգ Խափամաճեան | |
| Յարութիւն Մոմճեան | |
| Քրիստոստու Ղազարոսեան | |
| Մկրտիչ Ագաթօն | |
| Մ. Աբրահամ Սաղըրեան | |
| Սենեքերիմ Մ. Մանուկեան | |
| Յովհաննէս Կիւմիւշեան | |
| Յովհաննէս Քապզիմալեան | |
| Յարութիւն Քալբաքճեան | |
| Յարութիւն Կուտենեան | Գանձապետ |
| Յակոբ Պէյլէրեան | |

Ընկերութեան Կեսարիոյ կազմն էր.

| | |
|---|---|
| Մ. Պօղոս Սեթեան | Փոխ-Նախագահ |
| Յովհաննէս Թիւրապեան | Ներքին Տեսուչ |
| Մ. Աբրահամ Ստամպօլեան | Ներքին Տեսուչ |
| Մ. Աւետիք Կիւլպէկեան | Ներքին Տեսուչ |
| Մ. Մանուկ Մանուկեան | Ներքին Տեսուչ |
| Մ. Կիւլապի Կիւլպէկեան | Ներքին Տեսուչ |
| Մ. Գասպար Գասպարեան | Գանձապետ |
| Յովհաննէս Սեթեան | Արտաքին Տեսուչ |
| Ստեփան Թիւրապեան | Արտաքին Տեսուչ |
| Մ. Գրիգոր Կիւլպէկեան | Արտաքին Տեսուչ |
| Մ. Կիւլպէկ Կիւլպէկեան | Արտաքին Տեսուչ |
| Սահակ Մուլեան | Արտաքին Տեսուչ |
| Մարտիրոս Պալեօզեան | Արտաքին Տեսուչ |

(Կանոնագրութիւն Մամիկոն. Ընկերութեան, Կ. Պ. 1849, էջ 6—7):

Ընկերութեան կանոնագրութիւնը 29 Յօդուածէ կը բաղկանայ եւ հաստատուած է Յակոբ Պատրիարք Արքեպ․է 1849 Յուլիս 1ին։ Տանք քանի մը Յօդուած․ — «Ընկերութեան բոլոր անդամները․․․ հայազգի պիտի ըլլան» (Յօդ․ 1)․ «Ստորագրութեան մէկ բաժինը ամիսը երեք ղուռուշ է (Յօդ․ 2), Ընկերութեան կնիքը չորս կտորէ կը բաղկանայ, չորսն ալ զատ զատ անձերու քով պահուելով․ բան մը կնքած ատեն՝ չորսն ալ ներկայ պիտի ըլլան (Յօդ․ 29)։

Ընկերութեան գլխաւոր նպատակն է․ «Հայերէն լեզուն նորէն տարածել կեսարիոյ եւ անոր մէկ քանի հայաբնակ գիւղերուն մէջ» (Հայաստան, կ․ դ․ 1849 թ․ 173)։ Երկրորդ գլխաւոր նպատակն է Թալասի Վարդ–Պատրիկեան վարժարանի կառավարութիւնը եւ զարգացումը։ Վարժարանը 1848ին ունեցած էր քարաշէն շէնք մը (Հայաստան, անդ՝ թ․ 178)։

1852ին Ընկերութիւնը կը շարունակէր իր գործունէութիւնը եւ մեծ արդիւնք ձեռք բերած էր՝ Իր պաշտպանութեան յանձնուած Վարդ–Պատրիկեան վարժարանի միջոցաւ Կեսարիոյ ժողովուրդին մէջ հայերէն մայրենի լեզուն արթնցնելով եւ տարածելով (Հմմտ․ Նոյեան Աղաւնի, կ․ դ․ 1852 թ․ 37)։

1852 Դեկտ․ 9ին Ընկերութիւնը վարժարանի բոլոր ծախքերը վճարելէ վերջ՝ 20,000 ղուրուշի գումար մը աւելցուցած էր (Մասիս, կ․ դ․ 1852 թ․ 47)։

1875ին Ընկերութիւնը տակաւին կանգուն էր, իր դպրոցը փայլուն վիճակով իր անուան տօնը կը խմբէ Վարդանանց տօնին (Մասիս, 1875 Թ. 1658):

Անկէ վերջ յիշատակութիւն չենք գտներ:

2. ԱՐՇԱԿՈՒՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1850)

Թալասի Վարի թաղի պանդուխտները Պոլսոյ մէջ կը հիմնեն այս Ընկերութիւնը՝ իրենց թաղին մէջ համանուն վարժարան մը բանալու համար (Պատմութիւն Հայ Կեսարիոյ, Ա., էջ 1164):

Հնութեան մէջ յիշատակութիւն մը գտած չենք:

3. ԽՆԱՄՈՂԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (187—6)

Հաւանօրէն 1875ի վերջերը կամ 1876ի սկիզբը հիմնուած է: Կը յիշուի 1876 Յունուարին (Մանզումէի էֆքեար, Կ. Պ. 1876 Թ. 3061): Հիմնադիրներէն մին է Տիկ. Մ. Մելեան: Նպատակն է՝ «Այրեաց եւ որբոց խնամ տանիլ» (Անդ):

1876 Սեպտեմբերին Ընկերութիւնը սա վարչական անդամներն ունի.

Յարութիւն Մելեան
Պաղտասար Տէյիրմէնճեան
Քերովբէ Կիւլպէյեան

(Մանզ. էֆ., 1876 Թ. 3205):

Ընկերութիւնս հիմնուած է Պոլիս (Անդ):

4· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1881)

*Կը յիշէ* Ալպօյաճեան (*Պատմ. Հայ Կեսար.* Ա. *էջ* 1262), *անծանօթ մնալով* նպատակը :

## ՖԷՆԷՍԷ ԳԻՒՂ

1· ԵՐԿՐԱԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1861)

*Կազմուած է* Պոլիս 1861*ին* : *Նպատակն է*. Երկիր գնելով՝ երկրագործութիւնը մշակել (Կիլիկիա, *Կ. Պ.* 1863, *էջ* 422) : *Ընկերութեան* առաջին տարեդարձը *կը տօնախմբեն* 1862 *Յուլիսին* (Մասիս, 1862 *թ.* 547) :

*Ընկերութիւնը կազմողներու մէջ են նաեւ* Էվֆէրէցիներ, Թոմարզացիներ : 1863*ին* *Ընկերութիւնը ունէր* 700 *բաժանորդ եւ* 1000 *բաժին* : *Մէկ բաժինը* 5 *ղուրուշ էր* : 1863*ին* *Ընկերութիւնը* 150,000 *ղրշ·ի դրամագլուխ մը ունէր* (Մասիս 1863 *թ.* 604) : — 1863*է վերջ չի յիշուիր* :

2· ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1866—7)

*Պոլսոյ* Անձնուէր Սանուց Ընկերութիւնը 1867 *Յուլիսին կը ծանուցանէ որ* «*Կեսարիոյ* Ֆէնէսէ Գիւղին *մէջ ալ* Անձնանուէր Ընկերութեան *ճիւղ մ'ունեցաւ* Մ· Կարապետ Տ· Յակոբեանի *միջոցաւ, որն որ հինգ տարիէ չափ Ընկերութեանս աշակերտած ու բաւական ուսմունք առնելով իւր հայրենիքը վերադառնալով* Կիւրակէ օրեայ դպրոց մը հաստատած է» (Մասիս, 1867 *թ.* 807 : — Փունջ, *Կ. Պ.* 1867 *թ.* 182) :

### 3· ՌՈՒԲԻՆԵԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1882)

Կազմուելու սկիզբ եղած է 1882ի վերջերը Պոլսոյ մէջ։ Ընկերութեան Կանոնագիրը վաւերացնել կ'ուզեն 1883 Փետրուարին (Մասիս, 1883 թ· 3415)։

Հնութեան մէջ մանրամասնութիւն չկայ։ 1888ին՝ երբ Վարժարանի Տնօրէն՝ պաշտօնի կը հրաւիրէ Համբարձում Ամատունին՝ 70 ոսկի տարեթոշակով, որ «կը ձեռնարկէ կրթական բարեկարգութեան՝ ուղեցոյց ունենալով Պոլսոյ ազգ· վարժարաններու Ուսումնական ծրագիրը···» (Տե՛ս Պատմ· Հայ Կեսարիոյ, Ա·, էջ 1170—1)։ Անշուշտ այս Ընկերութեան շնորհիւ էր որ երկար ատեն կանգուն կը մնայ Ֆէնէսէի դպրոցը եւ յառաժամ վերելք կ'ունենայ մինչեւ 1900 (Անդ)։

### 4· ԱՆՁՆՈՒԷՐՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

Գաբրիէլ Թագուորեան կը պատմէ որ Ֆէնէսէի մէջ «···Հայերը կը դժկամակէին թոշակ վճարելու։ Մանաւանդ բարեկեցիկ դասը··· կը խուսափէր միշտ իր սեփական պարտքը հատուցանել եկեղեցիին կամ դպրոցին»։ Ահա ասիկա առիթ կու տայ խումբ մը որոշ երիտասարդներու՝ կազմելու «Անձնուէրներու Միութիւն»ը, որուն նպատակն էր «ամէն գնով հարուստներէն գանձել եկեղեցւոյ պահանջները» (Պատմ· Հայ Կեսար· Ա, էջ 1173)։

## ԷՎԷՐԷԿ ԳԻՒՂ

### 1. ԵՐԿՐԱԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1861)

Հիմնուած է Պոլիս 1861 Մայիս 1ին Էվէրէկցի եւ Ֆէնէսեցի պանդուխտներէ: Իրենց Կանոնագիրը, հայերէն եւ տաճկերէն, հրատարակուած Պոլիս 1862ին՝ ունի 54 Յօդուած: Իր նպատակն է. — «Երկրագործութիւն. Էվէրէկի եւ Ֆէնէսէի մօտերը մեւտաքսի եւ բամբակի բերքերուն աշխատիլ...» (Կանոնագիր Երկրագործական Ընկերութեան, Կ. Պ. 1862, էջ Ա). ամսական անդամավճարն է 5 ղուրուշ (էջ 2):

Կը յիշեն Մասիս (1862 թ. 547), Կիլիկիա (1863, էջ 2/22), Մասիս (1863 թ. 604): Անդամակցութեան շրջանը 3 տարի է (Յօդ. 5): «Անդամ գրուող մարդը պատուաւոր եւ ամբիծ պիտի ըլլայ» (Յօդ. 10): — Յայտնի չէ թէ Ընկերութիւնը իր նպատակին հասա՞ծ է: 1863էն վերջ չի յիշուիր:

### 2. ԴՊՐՈՑԱՇԷՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

1864ին հիմնուած եւ դպրոց մը բանալու համար կրցած է 30,000 ղուրուշի գումար մը հաւաքել: Ընկերութիւնը՝ դպրոցը շինելէ վերջ՝ կը քայքայուի (Պատմ. Հայ Կեսարիոյ, Ա. էջ 823 եւ 1859):

### 3. ՀԱՅԿԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865—70)

Ըստ Ա. Ալպօյաճեանի (Պատմ. Հայ Կեսարիոյ, Ա. էջ 1259) հիմնուած է 1869—

70ին՝ նպատակ ունենալով Գիւղի դպրոցին օժանդակել:

4· ԴՊՐՈՑԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

Կազմուած է 1875ին՝ դպրոցին նպաստելու համար (Մանզումէի էֆ· 1875 թ· 2904):

5· ՄԵՍՐՈՊԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

Պոլսոյ Էվէրէկցիները կազմած են: Կը յիշէ Հայրենիք (Կ· Պ· 1883 թ· 1300, 1306): Ընկերութիւնը Պոլսէն Գիւղ կը ղրկէ կարող ուսուցիչ մը — Երուանդ Երկաթեան, որ երեք տարի աշխատելով դպրոցը կը վերածէ օրինակելի կրթարանի մը: Երկար տեւած կ՝երեւայ այս Ընկերութիւնը: Ամերիկաբնակ Էվէրէկցիներ յետոյ վերակազմած են այս Ընկերութիւնը եւ օժանդակած իրենց Գիւղի դպրոցին (Պատմ· Հայ Կեսար· Ա· էջ 1176):

6· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1906)

Հիմնած են Նիւ Եօրկաբնակ Էվէրէկցիները 1906 Հոկտ· 1ին «օգնելու եւ յառաջադիմութեան միջոցներ հայթայթելու համար Էվէրէկի Մեսրոպեան վարժարանին (Ամերիկահայ Տարեցոյց, Պոստոն 1912, էջ 183): Հիմնադիր–Վարիչներ են·

| | |
|---|---|
| Եղիա Լաչինեան | Ատենապետ |
| Կարապետ Բաշայեան | Փոխ–Ատենապետ |
| Եղիա Գուզուճեան | Ատենադպիր |

| | |
|---|---|
| Սերոբ Գուզուճեան | Խորհրդական |
| Յակոբ Կէօզիւպէօյիւքեան | Գանձապահ |
| Յարութիւն Քէօչէեան | Հաւաքիչ |
| Խաչ Մելքեսեան | Խորհրդական |

Ընկերութեան անդամավճարն էր 25 սենտ եւ մէկ դոլար մուտք (Անդ) ։ Ընկերութիւնը դպրոց մը բացած է Գարաճավիրան Գիւղի մէջ՝ ուսուցչին ծախքն ալ իր վրան առնելով (Պատմ. Հայ Կեսար. Բ. էջ 1966) ։

7. ՊԱՀՊԱՆՈՂԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

Կը յիշուի 1908 Հոկտ. 13ին՝ սա ձեւով. — «Պահպանողական Ընկերութեան անդամք Էվէրէկ–Ֆէնէսէ» (Մանզումէի Էֆֆեար, Կ. Պ. 1908 Թ. 2257, Նոյ. 3) ։ Կ'երեւայ թէ Էվէրէկ–Ֆէնէսէ գիւղերը միասին կազմեր են ։

8. ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918—20)

Զինադադարէն վերջ Պոլսոյ մէջ Էվէրէկցիները կազմած են Հայրենակց. Միութիւն մը, որուն Ատենապետն եղած է Յակոբ Ալթըփարմագեան (Թէոդիկ, Ամէն. Տարեց. 1921, էջ 307) ։

9. ՀԱՅՐԵՆԱԿՑ. ՄԻՈՒԹԻՒՆ (1926)

Կազմուած է Նիւ Եորք 1926ին՝ գործունէութեան իբր սպարէզ ունենալով Բէյրութի գաղթականութիւնը ։ 1935էն վերջ կը միանայ Նոր Կեսարիոյ Համագործակցականին ։

# ԹՈՄԱՐՁԱ ԳԻՒՂ

## 1. ԵՐԿՐԱԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1861)

Թոմարզա *եւս ունեցած է այս Ընկերու-թիւնը համանման Էվէրէկի եւ Ֆէնէսէի։ Հիմնումը* 1861 *Մայիս* 1*ին է*։ Մասիս (1862 *թ*. 547) *կը յիշէ զայն*։

## 2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

Ամերիկա (*Րէսին*) *պանդխտած Թոմար-զացիները հիմնած են* «Թոմարզայի Ազգ. Սա-հակեան վարժարանի Ուսումնասիրաց Ընկե-րութիւն»*ը* 1909 *Մարտ* 1*ին*։ *Իրենց նպա-տակն էր*. — *Նիւթական եւ բարոյական աջակցութեամբ բարձրացնել դպրոցները եւ նպաստել կրթութեան տարածման* (Ազգա-մարդ, Կ. Պ.) 1911 *թ*. 542)։

*Հիմնադիրներն էին*.

| | |
|---|---|
| *Յովհաննէս Ճինկէօզեան* | *Ատենապետ* |
| *Յակոբ Մատաղճեան* | *Ատենադպիր* |
| *Յարութիւն Տէտէեան* | |
| *Պարսամ Գալֆայեան* | |
| *Սեղրակ Կիւրիւնեան* | |
| *Մկրտիչ Գալֆայեան* | |

(*Պատմ. Հայ Կեսար. Բ. էջ* 1967)։

## 3. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

*Կազմած են Ամերիկաբնակ Թոմարզա-ցիներ* 1910 *Յունիս* 10*ին*։ *Առաջին Վարիչ-ներն եղած են*.

Աւագ Տրդատեան
Պետրոս Տէտէեան (Անդ):

4· ՄԻԱՑԵԱԼ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1926)

Թոմարզայի Ուսումնասիրաց եւ Աղքատախնամ Ընկերութիւնները միանալով՝ 1926 Սեպտեմբեր 12ին կը կազմեն՝ Թոմարզայի Միացեալ Ընկերութիւնը: Ասոր առաջին նպատակը կ'ըլլայ Նոր Թոմարզա աւան մը կանգնել Հայաստանի մէջ: Ընկերութիւնը կ'ունենայ 30,000 տոլարի հիմնադրամ մը, որմէ առաջին առթիւ 10,000 տոլար կը տրամադրէ Նոր Թոմարզայի եւ կառուցումներու համար 2 բեռնատար կառքով նի թ եւ ատաղձ կը ղրկէ Հայաստան:

Բազմաթիւ մասնաճիւղերու մինչեւ կապ պահելու եւ Հայաստանի մէջ խառուցող Նոր Թոմարզայի մասին տեղեկութիւն հաղորդելու համար Ընկերութիւնը 1931ին կը սկսի հրատարակել «Նոր Թոմարզա» անունով պարբերաթերթ մը (Տե՛ս Պատմ. Հայ Կեսար. Բ. էջ 1998, 2000):

Ահաւասիկ «Միացեալ»ի անդրանիկ Վարչութիւնը·

| | |
|---|---|
| Յովհաննէս Տէր Գրիգորեան | Նախագահ |
| Տիգրան Ծինկէօզեան | Ատենապետ |
| Վարդան Ջալըմենց | Ատենադպիր |
| Միքայէլ Գալայճեան | Գանձապահ |
| Բարսեղ Գալայճեան | Կնքապահ |

(Յարութիւն Պարութեան, Յուշեր Թոմարզայի Անցեալէն. Պէյրութ 1960, էջ 79):

# ԿԵՐՄԻՐ ԳԻՒՂ

## 1. ՊԱՐԹԵՒԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860—61)

*Հիմնումի թուականը ճշդիւ չի նշանակուիր*: 1863 *Մայիսին կը գրէ՝* Մասիս. — «*Կեսարիոյ* Կերմիր գիւղի *հայադգիք*, *որ* ասկէց առաջ Պարթեւեան Ընկերութիւն *մը հաստատած եւ ազգասիրաբար* 60,000 դուրուշի գումար մը հայթայթած էին, *անոր շահովը ալ* տարիէն աւելի է *որ Կէրմիրի մէջ* Պարթեւեան Վարժարան *կանգնելէ զատ՝* աղջկանց ալ նոր վարժարան մը բանալու յաջողեր են» (Մասիս, *կ. գ.* 1863 *թ.* 589, *Մայիս* 25: — *Տե՛ս նաեւ* Մէնմուայր Հավատիս, *կ. գ.* 1863 *թ.* 501):

*Նկատի առնելով որ Ընկերութիւնը* 60,000 դրշ. կրցած էր հաւաքել *եւ* յետոյ բանալ *իւրանուն վարժարանը՝ պէտք ենք ընդունիլ որ Ընկերութեան հիմնումը չէր կրնար* 1861էն վերջն *ըլլալ*: *Հաւանական կը մնայ հիմնումի թուական ընդունիլ* 1860—1861*ը*:

Ա. Ալպօյաճեան (*Պատմ. Հայ Կեսարիոյ, Ա. էջ* 1254) *առանց որեւէ հին աղբիւր ունեցած ըլլալու՝* Պարթեւեան Ընկերութեան *հիմնումը* 1862*ին կը դնէ, իսկ* աղջկանց վարժարանի *բացումն ալ* 1869*ին կարծած է, մինչդեռ* Մասիս, *ինչպէս տեսանք՝* արդէն 1863ին բացուած է, *կ՚ըսէ*:

*Պարթեւեան վարժարանի ուսուցիչն է* Մ. Ստեփան Մ. Յովհաննէսեան (Մասիս, *անդ՝ թ.* 563):

Ընկերութեան վարժարանը կը շարունակէր իր ընթացքը՝ իր դասացուցակին մէջ ունենալով հայերէն, տանկերէն եւ անգլիերէն լեզուներու ուսուցումը: Անոր փափաքն էր աւելցնել նաեւ ֆրանսերէն լեզուն: Ատոր կը հասնի 1869—70ին նոր Ընկերութիւն մը հիմնելով (Մանզումէի էֆքեար, 1870 թ. 1210):

### 2. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869—70)

Պարթեւեան վարժարանի մէջ ֆրանսերէնի ուսումը մտցնելու եւ յատուկ ուսուցիչ մը բռնելու համար՝ «Մէկ քանի ազգասէր անձեր մասնաւոր Ընկերութիւն մը կը հիմնեն՝ դայն երեք տարի շարունակելու պայմանաւ...» եւ «արդէն բաւական ատեն կայ որ ֆրանսերէն լեզուի, դասատու կարգեր են Պ. Գ. Մելիքեան» (Մանզ. էֆ. 1870 թ. 1210, Ապրիլ 8):

Քանի որ այս Ընկերութիւնը «բաւական ատեն կայ» որ 1870 Ապրիլէն առաջ ֆրանսերէնի ուսուցիչ բռնած է՝ հարկ է ենթադրել թէ Ընկերութեան հիմնումը եղած ըլլալու է 1869—70ի միջոցին: — Ընկերութեան անունը յիշուած չէ:

## ՄՈՒՆՃՈՒՍՈՒՆ ԳԻՒՂ

### 1. ՀՈՂԱԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863)

Կազմուած է 1863 Սեպտ.ին: Անդամավճարն է 5 ղրշ., իսկ մուտքի տուրքը՝ 50 ղուրուշ: 1865ին վերջը գնած էր 5 արտ

Մունճուսունի մէջ եւ Թատտունի վերածած (Վարագայի Հավատիս, կ. Գ. 1865 թ. 273, Դեկտ. 25)։ Ընկերութեան նպատակն եղած է՝ դրամագլուխը շատցնելով կանոնաւոր պարտոց մը բանալ (Մասիս, կ. Գ. 1886 թ. 3848)։ Կրցա՞ծ է բանալ։ — Չենք գիտեր ծանօթութիւն։ 1893ին լուծուած էր Ընկերութիւնը (Արեւելք, կ. Գ. 1893 թ. 3423)։

## 2. ԱՆՁՆՈՒԷ՞Ր ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864—5)

Մասիսի (1886 թ. 3848) համեմատ Պոլսոյ Մունճուսունցիք Հողագործական Ընկերութենէն դատ ուրիշ Ընկերութիւն մ'ալ հիմնած էին, որուն հիմնումի թուականը եւ Ընկերութեան անունը չի տար յօդուածագիրը։ Հաւանական է որ այս երկրորդ Ընկերութիւնը «Անձնուէր» եղած ըլլայ՝ հիմնումի թուականն ալ իրր 1864—5։ — Ընկերութիւնը Պոլսոյ մէջ կալուածներ գնած էր, որոնց եկամուտով Գիւղին դպրոցը կը կառավարէր։ Ըստ Ալպօյաճեանի (Պատմ. Հայ Կեսար. Ա. էջ 1254) 1880ին դեռ կանգուն էր Ընկերութիւնը։

## 3. ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880—1)

Կը յիշուի 1882 Օգոստ.ին միայն Մասիս ի (1882 թ. 3480) քով, առանց որեւէ տեղեկութեան։ Անծանօթ եղած է Ա. Ալպօյաճեանի։

## ՊԱԼԱԿԷՍԻ ԳԻՒՂ

### 1· ԱԶԳԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870—2)

*Կազմուած է իրր 1870—71ին: Օժանդակած է Գիւղի* Տանատեան *դպրոցին: Ընկերութիւնը 1883ին վերակազմուած եւ շարունակած է նպաստել դպրոցին* (Մասիս, 1883 *Թ*· 3848) :

## ԷՖԹԷՐԷ ԳԻՒՂ

### 1· ԼՈՒՍԻՆԵԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1878—79)

1879 *Մարտ* 22 *Թուով կ'իմացնէ Պօլսոյ* Մանզումէի էփքեար (*Թ*· 4013) *թէ* էփքէրէ Գիւղի Պօլսաքեանկ *անձերը Ընկերութիւն մը հիմնած են Գիւղին մէջ դպրոց մը բանալու եւ կամ Գիւղի դպրոցին նպաստելու համար: Ընկերութեան անունն է* «Լուսինեան Միութիւն» : *Մանրամասնութիւն կը պակսի: Հիմնումի Թուականը չի ճշդուիր: Կրնայ 1878—79ին հիմնուած ըլլալ:*

*Ընկերութիւնս անծանօթ է* «*Պատմութիւն Հայ Կեսարիոյ*» *գրքին:*

### 2· ՄԵՍՐՈՊԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (···1883)

Ա· Ալպօյաճեան (*Պատմ· Հայ Կեսարիոյ, Ա· էջ* 1262) *կը գրէ·* «*Էֆքէրէցիներու կազմած* Մեսրոպեան Ընկերութիւնը 1883*ին կը յաջողի բանալու դպրոց մը այդ գիւղին մէջ*» : *Զ'րսեր սակայն թէ երբ հիմնուած է Ընկերութիւնը:*

### 3· ՅԱՌԱՋԴԻՄԱՍԷՐ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԱԿՈՒՄԲ (1908)

*Հիմնուած է 1908ին։ Զօրավիգ է դպրոցին։ Ունի* Ընթերցարան *մը եւ բազմաթիւ վճարող անդամներ* (Բիւզանդիոն, *Կ. Պ.* 1909 *Թ.* 3726)։

### 4· ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1912)

*Կազմած են* Նիւ Եօրկաբնակ *էֆքէրէցիներ 1912ին ակիզրները, որոնք 1915ին 621 ոսկի ղրկած են էջմիածին՝ «յօգուտ գաղթականաց»* (Արարատ, *Վաղարշապատ* 1915, *էջ* 706)։

*Միութեան առաջին Վարիչներն եղած են.*

| | |
|---|---|
| *Տ. Սէֆէրեան* | *Ատենապետ* |
| *Լ. Պալեան* | *Ատենադպիր* |
| *Վ. Գողանեան* | *Խորհրդական* |
| *Ս. Թափայէլեան* | *Գանձապահ* |
| *Հ. Մազմանեան* | *Խորհրդական* |

*Միութիւնը կ'օգնէ Գիւղի աղջկանց վարժարանի շինութեան* : 1913 *Նոյ.* 1*ի Ընդհ. Ժողովի մէջ Միութիւնը կը յորջորջէն.* — «Հէֆֆարէի Աղջկանց վարժարանի Կրթասիրաց Միութիւն» (*Պատմ. Հայ Կեսարի, Բ. էջ* 1968)։ 1935*ին կը կոչուի* Վերաշինաց Միութիւն։

### 5· ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

Կ. Պոլսոյ *մէջ կը կազմեն* Եռովք Արմէն եւ Յակոբ Յակոբեան։ *Երկար տեւած չէ*։

## ՆԻՅՏԷ ԳԻՒՂ

1· ՈՐԲԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1882)

*Կը յիշէ լոկ անունով* Մանզումէի էֆ-քեար (1882 *Թ*· 4868)։

## ԶՈՄԱԽԼՈՒ ԳԻՒՂ

1· ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1906)

Նիւ Եորքի *մէջ* 1906 *Սեպտ*· 1*ին կազ-մուած է* «Զոմախլուի Ազգային Կրթասիրաց Միութիւնը»։ *Իր առաջին Վարչ· կազմը կ՚ըլլայ*·

| | |
|---|---|
| *Գառնիկ Անտոնեան* | *Ատենապետ* |
| *Պօղոս Սիմոնեան* | *Ատենադպիր* |
| *Խաչիկ Մելքեսեան* | *Գանձապահ* |
| *Աբրահամ Դաւիթեան* | |
| *Մանուէլ Ջէօրտիկեան* | |

*

*Միութիւնը կ՚ունենայ իր* Կանոնագիրը, *որուն առաջին Յօդուածը կ՚ըսէ· «Միու-թեանս նպատակն է Զոմախլուի եւ շրջակայ գիւղերու աղքատիկ Հայ մանուկները ձրիա-բար կրթել»* (Արխս Տ· Կ· Գալփայեան, *Զո-մախլու· Նիւ Եորք* 1930, *էջ* 161)։

*Միութիւնը կը յաջողի շատով բանալ* Խրիմեան *Վարժարանը Գիւղի* Վերի Թաղին *մէջ։ Միութիւնը կը զօրանայ Գիւղին եւ Ամերիկա պանդուխտներու ձեռնտուութեամբ։ Վարժարանը կրնայ երկու սերունդ հայ-*

նել ։ Կ'ունենայ Մասնաճիւղեր, որոնցմէ Հարաւային Ամերիկայինը գաղափար կը յղանայ Գիւղին Վերի եւ Վարի Թաղերուն մէջ աղջկանց վարժարաններ բանալ. կը բանայ՝ հոգալով վարձուհիներ ալ ։ Միութիւնը վարժարան մ'ալ Վարի Թաղի մէջ կը բանայ եւ յատուկ Վարչ. մարմիններով կը կառավարէ զանոնք (Անդ՝ էջ 161—63) ։

Կրթասիրացը կը յիշեն Ազատամարտ (1910 թ. 189), Ժամանակ (1920 թ. 3800) եւ Հայրենիք (1920 թ. 2380) ։

2. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1906—10)

Վարի Թաղն ալ ունեցած է Ընկերութիւն մը, որուն մասին շատ անորոշ ակնարկութիւն մը կ'ընէ Գալֆայեան (Անդ՝ էջ 164), բերելով թէ 1920ի ատենները «գրեթէ դադրած էր կենսունակ ըլլալէ» Ամերիկա գաղթող Ընկերութեան անդամներուն մէջ ։

3. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1906—10)

Զմմախլուի Բողոքականները եւս կազմած էին Ընկերութիւն մը, զոր կ'ակնարկէ Գալֆայեան (Անդ՝ էջ 164), առանց անունը տալու եւ ճշդելու հիմնումի տարին ։

4. ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1920—3)

Կազմած են Նիւ Եորքի մէջ՝ «Խրիմեան» Վարժարանի շառաւիղները (Անդ՝ էջ 164) ։

